

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 1981

## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1981 թվականի նոյեմբերի 16-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը: Պլենումը լսեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. Բայբակովի զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների պետական պլանի մասին և ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պետական պլանի մասին» և ՍՍՀՄ ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումը «ՍՍՀՄ 1982 թվականի պետական բյուջեի մասին»:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը:

Զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Ռոմանովը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Տ. Յա. Կիսելյովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Ալիևը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Օ. Ս. Միրոշխինը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Պ. Գրիշկյավիչուսը, ՍՄԿԿ Ստավրոպոլի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ս. Մուրախովսկին, Ուկրաինայի կոմկուսի Դնեպրոպետրովսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ե. Վ. Կաչալովսկին, նավթի ու գազի արդյունաբերության ձեռնարկությունների շինարարության մինիստր ընկ. Բ. Ե. Շչերբինան, Իվանովոյի Վ. Ի. Լենինի անվան նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատի ջուլհակուհի ընկ. Վ. Ն. Գոլուբևան, անասնապահության և կերարտադրության մեքենաշինության մինիստր ընկ. Կ. Ն. Բելյակը, Ուզբեկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Դ. Խուդայբերդիևը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում:

Դրանով Կենտրոնական կոմիտեի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1981-1985 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ, ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1982 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՀՄ 1982 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

Հիմնականում հավանություն տալ **ՍՍՀՄ** տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների պետական պլանի, **ՍՍՀՄ** տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պետական պլանի և **ՍՍՀՄ** 1982 թվականի պետական բյուջեի նախագծերին:

**ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդին՝ հիշյալ նախագծերը ներկայացնել **ՍՍՀՄ** Գերագույն սովետի քննարկմանը:

Ամբողջովին ու լիովին հավանություն տալ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի գործունեությանը ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության XXVI համագումարի մշակած ստրատեգիական կուրսի կենսագործման, կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման ուղղությամբ:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին, կուսակցական կազմակերպություններին, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմիններին, մինիստրություններին և գերատեսչություններին՝ ղեկավարվելով պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում շարադրված դրույթներով ու հետևություններով, ուշադրությունը կենտրոնացնել ընթացիկ տարվա առաջադրանքների հաջող ավարտման, 1982 թվականի պլանի և ամբողջությամբ վերցրած հնգամյակի կատարման ու գերակատարման վրա: Այդ նպատակով բոլոր ջանքերն ուղղել կուսակցության կարևորագույն ցուցումի իրականացմանը՝ ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացմանը, նրա ինտենսիվացմանը: Եղած հնարավորությունները առավելագույնս օգտագործել ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում գիտատեխնիկական պրոգրեսի արագացման, աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի թողարկման ավելացման և որակի բարձրացման համար:

Հատուկ ուշադրություն պետք է նվիրվի կապիտալ շինարարության զգալի բարելավմանը: Անհրաժեշտ միջոցառումներ իրականացնել ապահովելու



մետաղի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, հումքի և նյութերի, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ ու խնայողական ծախսումը, ամեն ինչ անել, որպեսզի մեր էկոնոմիկան լինի խնայողական: Բարձրացնել գիտության դերը, հասնել գիտահետազոտական, նախագծային և կոնստրուկտորական կազմակերպությունների գործունեության ավելի արգասավոր արդյունքների: Համառատակամորեն աշխատանք տանել էկոնոմիկայի պլանավորման ու կառավարման հետագա բարելավման, տնտեսավարման ձևի ու մեթոդների կատարելագործման ուղղությամբ:

Հասնել արտաքին տնտեսական կապերի արդյունավետության աճի, առաջին հերթին սոցիալիստական երկրների հետ համագործակցության ընդլայնման:

**ՍՄԿԿ** Կենտկոմը շեշտում է, որ երկրի տնտեսական պոտենցիալի մեծացման, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության, վառելիքաէներգետիկ կոմպլեքսի դինամիկ զարգացման, պարենային պրոբլեմի լուծման, սովետական մարդկանց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման բնագավառում կուսակցության նախանշած խոշոր մասշտաբի խնդիրները յուրաքանչյուր ճյուղից, յուրաքանչյուր միութենական հանրապետությունից, երկրամասից, մարզից, քաղաքից և շրջանից, բոլոր աշխատավորական կոլեկտիվներից պահանջում են բազմապատկել ջանքերը ռեզերվներն ու հնարավորությունները ավելի լրիվ օգտագործելու նպատակով: Այդ կապակցությամբ պետք է առաջնահերթ նշանակություն տրվի արտադրության յուրաքանչյուր տեղամասում, կառավարման բոլոր ոլորտներում կազմակերպվածության, գործարարության բարձրացմանը, պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդմանը:

**ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ կոմունիստները, բոլոր աշխատավորները է՛լ ավելի լայնորեն կծավալեն սոցիալիստական մրցությունը, տասնմեկերորդ հնգամյակը կնշանավորեն հարվածային աշխատանքով, **ՍՄԿԿ XXVI** համագումարի որոշումների կատարման պայքարում ձեռք բերած նոր հաջողություններով:

---

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ 1981 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 16-ԻՆ

*Հարգելի ընկերնե՛ր։*

*ՍՄԿԿ XXVI համագումարից հետո անցած ժամանակաշրջանում քաղաքական, կազմակերպական և տնտեսական մեծ աշխատանք է կատարվել։ Աճել է մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվությունը։ Սովետական ժողովուրդը նոր հնգամյակը թևակոխել է լավատեսության, իր ուժերի նկատմամբ վստահության զգացումով։ Նա խորապես համոզված է, որ համագումարի առաջադրած կոմունիստական շինարարության մեծ ու բարդ խնդիրները հաջողությամբ կլուծվեն։*

*Կենտրոնական կոմիտեի ներկա պլենումը կարելի է դիտել որպես համագումարի աշխատանքի ուղղակի, անմիջական շարունակություն։ Համագումարում մենք հավանություն տվեցինք ութսունական թվականների տնտեսական քաղաքականությանը, հաստատեցինք երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունները։ Այժմ, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, մենք անում ենք հաջորդ քայլը։ Մենք պետք է քննարկենք հնգամյա պլանի նախագիծը, որի մեջ, 80-ական թվականների առաջին կեսի համեմատ, կոնկրետացվում են կուսակցության XXVI համագումարի տված ցուցումները։*

*Քննարկելով ՍՍՀՄ պետպլանի և Մինիստրների խորհրդի ներկայացրած նյութերը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն այն հետևությանը հանգեց, որ 1981—1985 թվականների պլանային առաջադրանքները հիմնականում համապատասխանում են համագումարի պահանջներին։ Դա, ընկերնե՛ր, ամենակարևորն է պլանի գնահատման համար։*

*Նախագծում հստակորեն նախատեսված են այն ուղիները, որոնք հնարավորություն են ընձեռում լուծելու հնգամյակի գլխավոր խնդիրը։ Հաստատվում է երկրի տնտեսական պոտենցիալը մեծացնելու, ժողովրդական տնտեսության արդյունավետությունը բարձրացնելու կուսակցության կուրսը։ Նախագիծը կողմնորոշում է դեպի սոցիալական ծրագրի բնագավառում համագումարի որոշումների կատարումը։ Դինամիկ կերպով կզարգանան արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը։ Միջոցներ են ձեռնարկվում կապիտալ ներդրումները կենտրոնացնելու ուղղությամբ։ Նոր խոշոր քայլ է արվում Սիբիրի և Հեռավոր Արևելքի յուրացման ասպարեզում։ Հետագա զարգացում կստանա յուրաքանչյուր միութենական հանրապետության էկոնոմիկան։ Հուսալիորեն ապահովվում են պաշտպանության կարիքները։*

*Ելնելով դրանից, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն ամբողջությամբ վերցրած հավանություն տվեց տասնմեկերորդ հնգամյա պլանի, ինչպես նաև 1982 թվականի պլանի և բյուջեի նախագծերին, և այդ փաստաթղթերը ներկայացնում է կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի քննարկմանը։*

*Ընկեր Ն. Կ. Բայբակովի զեկուցումից երևում է, թե ինչպիսի ոչ դյուրին պայմաններում է ձևավորվել հնգամյակը։ Դա առնչված է պատճառների երկու խմբի հետ։*

*Էկոնոմիկայի գործերի վիճակի վրա անդրադառնում է այն գործոնների ազդեցությունը, որոնք ամբողջովին կամ մասնակիորեն գտնվում են մեր վե-*



*րահսկողությունից դուրս։ Գյուղատնտեսությանը, ուրեմն և ամբողջ էկոնոմիկային, արդեն երեք տարի շարունակ մեծ վնաս է հասցնում երաշտը։ Պլանները մշակելիս, բնականաբար, հարկ է եղել հաշվի առնել նաև միջազգային իրադրության բարդացումը։*

*Իրեն զգալ է տալիս նաև մի այլ բան։ Մենք ճիշտ ենք ասում այն նոր պահանջների մասին , որոնք ներկայացնում է ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլը։ Բայց, դժբախտաբար, տնտեսական գործունեության և տնտեսական մտածողության ոճը, պլանավորման մեթոդները, կառավարման սիստեմը բավականաչափ եռանդուն կերպով չեն վերակառուցվում։*

*Այս ամենը չէր կարող իր կնիքը չդնել հնգամյա պլանի նախագծի վրա։ Պլանը դժվարին, լարված պլան է։ Բայց ի՞նչ է հետևում դրանից։ Դրանից հետևում է, որ հարկավոր է կրկնապատկել, եռապատկել ջանքերը այն կատարելու համար։ Դրանից հետևում է, որ հարկավոր է արագացնել տնտեսավարման ոճի ու մեթոդների վերակառուցումը։*

*Այնուհետև Լ. Ի. Բրեժնևը կանգ առավ տնտեսական շինարարության առավել հրատապ հարցերի և դրանց լուծման ուղիների վրա։*

*Կսկսեմ, ասաց նա, պարենից։ Պարենային պրոբլեմը թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական իմաստով ամբողջ հնգամյակի կենտրոնական պրոբլեմն է։*

*Այդ պրոբլեմի լուծման հիմքը գյուղատնտեսական արտադրության արագ տեմպերն են։ Պլանի նախագծում այդպիսի տեմպեր են նախատեսված։ Հացահատիկի տարեկան միջին բերքը հնգամյակում պետք է ավելանա գրեթե 35 միլիոն տոննայով, իսկ մսի արտադրությունը՝ ավելի քան 2 միլիոն տոննայով։ Նախատեսված է կարտոֆիլի, բանջարեղենի և մրգերի արտադրության էական ավելացում։*

*Հնգամյակն սկսվեց անբերրի տարով։ Բայց դա չի կարող, չպետք է խախտի պարենի արտադրության արագ և կայուն աճի մեր կողմնորոշումները։*

*Ի դեպ, բազմամյա փորձը ցույց է տալիս, որ մեզանում գյուղատնտեսության համար անբարենպաստ եղանակ է լինում համարյա երկու տարին մեկ։ Հետևաբար, դա պետք է դիտել ոչ թե որպես բացառություն, այլ որպես մեր կլիմայի համար բավական սովորական, բնական երևույթ։ Այստեղից էլ՝ մի շարք գործնական հետևություններ։*

*Քանի դեռ մենք չենք սովորել կառավարել եղանակը, հարկավոր է գյուղատնտեսության մեջ աշխատանքը ավելի հմտորեն հարմարեցնել կլիմայական վատ պայմաններին։ Դա ենթադրում է առավել խիստ մասնագիտացում ըստ ռեգիոնների։ Դա ենթադրում է ներդնել այնպիսի կուլտուրաներ, այնպիսի ագրոտեխնիկական եղանակներ, որոնք լավ բերք են ապահովում թե՛ խոնավության պակասի, թե՛ դրա ավելցուկի դեպքում։ Դա, վերջապես, ենթադրում է համապատասխան տեխնիկայի թողարկում և դրա ավելի լավ օգտագործում։ Այս ամենը, մելիորացիայի զարգացման, պարարտանյութերի հարաճուն քանակության առավել արդյունավետ օգտագործման հետ մեկտեղ, կօգնի թուլացնելու գյուղատնտեսության կախումը եղանակից։*

*Մշակելով գյուղատնտեսության առաջադրանքները, նորմատիվներն ու ցուցանիշները՝ կարևոր է ուշադիր հաշվի առնել տվյալ ռեգիոնի համար առավել հավանական, առավել ռեալ պայմանները։ Նրանց աշխատանքի մասին, ովքեր զբաղված են գյուղատնտեսության մեջ, չի կարելի դատել մի տարվա արդյունքների հիման վրա։*

*Մարդկանց, նրանց աշխատանքը հարկավոր է գնահատել՝ հաշվի առնելով այն, թե ինչի են ձգտում հասնել նրանք ինչպես լավ, այնպես էլ վատ եղանակի պայմաններում, որքանով հաստատուն, կայուն են նրանց աշխատանքի արդյունքները։*

*Լավ, կայուն աշխատանքի օրինակ են ցույց տալիս Ղազախստանի հողագործները։ Տասներորդ հնգամյակում հանրապետությունը գերակատարեց հացահատիկի արտադրության ու գնումների պլանը և փաստորեն հասավ պետությանը տարեկան մեկ միլիարդ փութ հացահատիկ վաճառելու բնագծին։ Այս տարի Ղազախստանի աշխատավորները, աշխատելով եղանակային բարդ պայ-*

կուտակված գիտատեխնիկական պոտենցիալի արդյունավետ օգտագործման մասին, արագացնեն նոր տեխնիկայի արմատավորումը:

Այժմյան դեմոգրաֆիական իրավիճակը, շեշտեց Լ. Ի. Բրեժնևը, պահանջում է ավելի լավ օգտագործել աշխատանքային ռեսուրսները: Պլանում նախատեսվում են որոշ ոչ արտադրական ճյուղերում աշխատողների թվական կազմի աճի սահմանափակման, արտադրության մեջ կենսաթոշակառուների, տնային տնտեսուհիների, գյուղի բնակիչների ակտիվ ներգրավման միջոցներ: Սակայն դա ակներևորեն անբավարար է: Չարիքի արմատը ձեռքի աշխատանքի դանդաղ կրճատումն է:

Ամբողջությամբ վերցրած արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքով զբաղված է բանվորների մոտավորապես 40 տոկոսը, իսկ շինարարության մեջ, սպասարկման ոլորտում՝ դրանից էլ շատ: Պետպլանը և ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն պետք է արագացնեն ձեռքի, հատկապես ծանր աշխատանքի կրճատման նպատակային կոմպլեքսային ծրագրի մշակումը: Սոցիալիզմը, որպես հասարակարգ, իր մեջ ունի հասարակության գլխավոր արտադրաուժի՝ մարդու աշխատանքի ռացիոնալ և մարդասիրական կիրառման հսկայական հնարավորություններ: Եվ այդ հնարավորությունները հարկավոր է լիովին օգտագործել: (Երկարատև ծափահարություններ):

Մեր էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման ոչ փոքր ռեզերվ է, ասաց Լ. Ի. Բրեժնևը, արտաքին տնտեսական կապերի կշռադատված, մտածված զարգացումը, առաջին հերթին սոցիալիստական երկրների հետ համագործակցության խորացումը: Այդպիսի համագործակցությունը թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական առաջնահերթ կարևորություն ունեցող բնագավառ է: Ուստի մենք պարտավոր ենք բոլոր տնտեսական ղեկավարներից պահանջել ավելի պատասխանատու կերպով կատարել այդ բնագավառում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները:

Հաջորդ մեծ պրոբլեմը, որին անդրադարձավ Լ. Ի. Բրեժնևը, էկոնոմիկայի կառավարման, տնտեսավարման մեխանիզմի կատարելագործումն է: Այդ հարցերի լուծումը կուսակցության քաղաքական և տեսական աշխատանքի անկապտելի մասն է: Տնտեսության ղեկավարումը բարելավելու համար քիչ բան չի արված: Սակայն էկոնոմիկան տեղում կանգնած չէ: Աճում, բարդանում է միջճյուղային և ներճյուղային կապերի սիստեմը: Ուստի բոլոր ժողովրդատնտեսական օղակների աշխատանքի ներդաշնակությունը դառնում է էկոնոմիկայի արդյունավետության ավելի ու ավելի կարևոր պայման:

Համագումարը լոզունգ հռչակեց՝ «էկոնոմիկան պետք է լինի խնայողական»: Այս պահանջին պետք է համապատասխանեցվի նաև ամբողջ տնտեսական մեխանիզմը: Բայց պետք է խոստովանել, որ դա առայժմ պատշաճ չափով չի արվել: Այդ իսկ պատճառով դեռևս հանդիպում ենք այնպիսի տնտեսական իրավիճակի, որի ժամանակ ձեռնարկությունների և միավորումների համար տնտեսապես շահավետ չէ արագացնել գիտատեխնիկական պրոգրեսը, բարձրացնել արտադրանքի որակը:

Այդ իսկ պատճառով դեռ չի հաջողվել ձերբազերծվել այնպիսի ցուցանիշներից, որոնք ըստ էության հրում են դեպի վատնողություն: Նկատի է առնվում տխրահռչակ «համախառնը», որը հաշվարկվում է տոննաներով և ռուբլիներով, երբ խոսքը վերաբերում է, օրինակ, հաստոցների թողարկմանը և հաց թխելուն, կամ էլ տոննա-կիլոմետրերով, երբ խոսքը վերաբերում է տրանսպորտի աշխատանքի գնահատմանը:

Քաջ հայտնի է, որ մեր պայմաններում հիմնական արտադրամիավորները ձեռնարկություններն ու միավորումներն են: Դա նշանակում է, որ կառավարման բոլոր մարմինները, ամբողջ տնտեսական մեխանիզմը կոչված են նպաստելու դրանց ավելի լավ աշխատանքին: Մինչդեռ իրականում լավ և վատ աշխատող ձեռնարկությունները հաճախ միատեսակ պայմանների մեջ են դրվում: Պլանային առաջադրանքները չկատարելը երբեմն քողարկվում է պլանի ճշգրտմամբ՝ նվազեցման իմաստով: Միևնույն ժամանակ առաջավոր ձեռնարկությունների ստացած խնայողությունը զանազան պատրվակներով առգրավ-



վում է: Ձեռնարկությունները հաճախ զրկվում են զարգացման ֆոնդերը ինքնուրույն տնօրինելու իրավունքից:
Էական բարելավման կարիք ունի նյութատեխնիկական մատակարարման
սիստեմը. մատակարարման գործում խափանումները, նույնիսկ կարճատև
խափանումները, քառացիորեն կազմալուծում են շատ ձեռնարկությունների և
կառույցների աշխատանքը: Սրանք բոլորն այնպիսի հարցեր են, որոնց լուծումը
լրացուցիչ ծախսումներ չի պահանջում, բայց կարող է տալ ժողովրդատնտե-
սական մեծ արդյունք:
Կարող են ասել, որ առաջադրված հարցերի մեծ մասը այս կամ այն չա-
փով իրենց արտացոլումն են գտնում տնտեսական մեխանիզմի կատարելա-
գործման վերաբերյալ հայտնի որոշման մեջ: Ճիշտ է, որ դա այդպես է: Բայց
չէ՞ որ անցել է ավելի քան երկու տարի, իսկ որոշումն արմատավորվում է
դանդաղ, կիսատ-պռատ:
Վերն ասվածից մի եզրակացություն է հետևում. կատարելով հնգամյա
պլանը՝ մենք միաժամանակ պետք է կատարելագործենք տնտեսական մեխա-
նիզմը, տնտեսության կառավարման սիստեմը:
Քաղբյուրոն այն եզրակացության եկավ, որ նպատակահարմար կլիներ
տվյալ հարցերին նվիրել նաև ՍՄԿԿ Կենտկոմի հերթական պլենումներից մեկը:
Հուսով եմ, ընկերնե՛ր, որ դո՛ւք՝ Կենտրոնական կոմիտեի անդամնե՛րդ, կհա-
մաձայնեք դրան: (Ծափահարություններ):
Տնտեսական ու սոցիալական պրոգրեսի հարաճուն փոխադարձ կապը, որը
բնորոշ է զարգացած սոցիալիստական հասարակության համար, այնուհետև
ասաց Լ. Ի. Բրեժնևը, որոշում է մեր պլաններում սոցիալական ծրագրի առա-
ջատար տեղը: Ներկայացված նախագծում մեծանում է ազգային եկամտի՝
սպառման համար օգտագործվող բաժինը: Բուն սպառման ֆոնդը 1985 թվա-
կանին, 1980 թվականի համեմատությամբ, ավելանում է 73 միլիարդ ռուբլով:
Պահպանված է «Բ» խմբի ավելի արագ աճի՝ համագումարի կողմնորոշումը:
Նախորդ հնգամյակի համեմատությամբ, զգալիորեն ավելի մեծ կլինի
գործվածքեղենի, կոշիկի, տրիկոտաժեղենի արտադրության աճը: 1,4 անգամ
ավելանում է կուլտուր-կենցաղային ապրանքների թողարկումը:
Կընդլայնվի ապրանքների տեսականին և կբարձրանա դրանց որակը: Ար-
դեն այժմ կան շատ ձեռնարկություններ, որոնց արտադրանքը մեծ և արժանի
պահանջարկ է վայելում: Դրանք են մայրաքաղաքի «Սոկոլ» և «Մոսկվա» կարի
միավորումները, Լենինգրադի Մ. Վ. Լոմոնոսովի անվան ճենապակու գործա-
րանը, «Կիևլյանկա» տրիկոտաժեղենի միավորումը, Երևանի «Մասիս» կոշիկի
միավորումը և մի շարք այլ ձեռնարկություններ: Դրվատանքի են արժանի այն
մինիստրությունների ձեռնարկություններում թողարկվող ապրանքները, որոնց
ղեկավարում են Է. Կ. Պերվիշինը և Ա. Ի. Շոկինը:
Շարունակվում է բնակչության եկամուտների աճի ապահովման կուրսը:
Սկսվել են աշխատավարձի բարձրացման ու կատարելագործման համապետա-
կան խոշոր միջոցառումներ: Այսպես, 1982 թվականի սկզբից, միաժամանակ
արագացնելով տեխնիկական վերազինումը, բարձրացվում են դրույքներն ու
ռոճիկները ածխարդյունաբերության մեջ:
Ընդլայնվում է երեխաներ ունեցող ընտանիքներին, աշխատող մայրերին
և նորապսակներին ցույց տրվող պետական օգնությունը, ինչպես նաև կանանց
համար ոչ լրիվ աշխատանքային օրվա կիրառման պրակտիկան: Արագացվում
է մանկական հիմնարկների կառուցումը: Բարձրացվում են կենսաթոշակների
նվազագույն չափերը և անցկացվում են կենսաթոշակային ապահովության բա-
րելավման այլ միջոցառումներ:
Առաջվա պես զգալի միջոցներ են հատկացվում առողջապահության և ժո-
ղովրդական կրթության զարգացմանը:
Բնակարանային շինարարությանը հատկացվում է 93 միլիարդ ռուբլի:
Ավելի հարմարավետ է դառնում բնակարանների հատակագծումը: Հատուկ
ուշադրություն է նվիրվում Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններին: Պլանա-
վորվում է գյուղական վայրերում կառուցել երեսուն միլիոն քառակուսի մետ-
րով ավելի բնակարաններ, քան տասներորդ հնգամյակում:

Դրա հետ մեկտեղ կուսակցությունը տեսնում է նաև առկա դժվարությունները։ Այն պատճառների բերումով, որոնց մասին արդեն խոսվեց, դեռ կպահպանվեն խափանումները մսի, կաթնեղենի, բամբակե գործվածքեղենի և մի շարք այլ ապրանքների մատակարարման գործում։ Կա այդ և մյուս պրոբլեմների լուծման միայն մի ուղի։ Դա, ինչպես բազմիցս նշել է կուսակցությունը, արտադրության աճն է, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, էկոնոմիկայի արդյունավետության մեծացումը։ Հենց դրան է կողմնորոշում հնգամյակի նախագիծը։

Մեր պատմությունից գիտենք, որ դժվարություններ եղել են և անցյալում։ Դրանք հնարավոր են նաև ապագայում։ Դա բնական է նորի ծննդյան, առաջընթացի պայմաններում։ Գլխավորն այն է, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, որ աչք չփակենք դժվարությունների հանդեպ, գտնենք դրանց հաղթահարման ճիշտ եղանակներ, կարողանանք մասսաներին մոբիլիզացնել պայքարելու դրանց դեմ։ Բոլշևիկների այդ հիանալի ավանդույթը այժմ էլ ապրում է կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց գործերում։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք ամեն ինչ ունենք հաջող աշխատանքի համար. բարձր զարգացած արտադրողական ուժեր, սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական և բարոյական միասնություն, առաջընթացի հստակ ստրատեգիա, որը սևեռված է համագումարի որոշումներում։ Հիմա մնում է, որ ողջ կուսակցությունը ավելի բարձրացնի տնտեսական շինարարության բնագավառում կազմակերպչական աշխատանքի մակարդակը։

Տասնմեկերորդ հնգամյակը պետք է դառնա ու կդառնա փառապանծ ուղենիշ սովետական ժողովրդի պատմական մեծագործությունների ճանապարհին։ Կասկած չկա, որ մեր երկրի աշխատավորները իրենց ուժն ու եռանդը, ստեղծագործությունն ու նախաձեռնությունը կգործադրեն այդ ճանապարհին նորանոր հաջողությունների հասնելու համար։ (Ծափահարություններ)։

Խոսելով 1982 թվականի պլանի մասին՝ Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ այդ պլանում նախատեսված են աճի չափավոր տեմպեր։ Ընդունելով պլանը՝ մենք խստորեն ելել ենք ռեալ հնարավորություններից։ Եվ նույնքան խստորեն մենք կպահանջենք դրա անվերապահ կատարում։ Կասեմ, ընկերնե՛ր, որ Մինիստրների խորհուրդը վճռականապես տրամադրված է տարվա վերջին պլանները ճշգրտելու՝ անցյալում թույլատրված պրակտիկայի դեմ։ Եկեք պաշտպանենք այդ տրամադրությունը։ (Ծափահարություններ)։ Չէ՛ որ հաստատումից հետո պլանը դառնում է մեր կյանքի ու գործունեության օրենք, և պլանին հենց որպես օրենքի, որպես կուսակցական ու պետական կարևորագույն փաստաթղթի պարտավոր են վերաբերվել ամենքը՝ բանվորից մինչև մինիստր։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն խնդիր է դնում. 1982 թվականի պլանը պետք է ո՛չ միայն կատարվի, այլև գերակատարվի։ Ի՞նչ է պետք անել դրա համար։

Նախ, խնայողության խստագույն ռեժիմ ապահովել ռեսուրսների բոլոր տեսակների օգտագործման մեջ, օպերատիվորեն և խստորեն կասեցնել անտնտեսվարությունն ու վատնողությունը։

Երկրորդ, գործնականորեն արմատական տեղաշարժերի հասնել կապիտալ շինարարության մեջ, գործարկել արտադրական կարողությունները պլանով նախատեսված բոլոր օբյեկտներում անխտիր։

Երրորդ, կազմակերպված, անկորուստ անցկացնել անասունների ձմեռումը, ժամանակին և որակով կատարել աշխատանքների ողջ կոմպլեքսը 1982 թվականին բարձր բերք ստանալու համար։

Եվ, վերջապես, անհրաժեշտ է պլանի կատարման ընթացքում արագացնել «Բ» խմբի զարգացումը և դրանով իսկ բարելավել մասսայական պահանջարկ վայելող ապրանքների ու պարենի մատակարարումը բնակչությանը։

Այս խնդիրները հասարակ չեն, մասշտաբային են, պահանջում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հստակ փոխգործողություն։ Եվ դրանք հաջողությամբ կատարելու համար հարկավոր է պլանի թվերն ամրապնդել դրանց կատարումը երաշխավորող տնտեսական ու կազմակերպական-քաղաքական միջոցառումներով։ Կազմակերպվածություն, գործարարություն, կար-



գապահություն՝ ահա պարտադիր պահանջները ինչպես կենտրոնում, նույնպես
և տեղերում։ Այս իսկ տեսանկյունով պետք է ընթանա կուսակցական, պետա-
կան, տնտեսական բոլոր մարմինների գործունեությունը։ (Ծափահարություն-
ներ)։
Մենք իրավունք ունենք հուսալու, որ միութենական հանրապետություն-
ների կոմկուսների կենտրոնական կոմիտեները, կուսակցության երկրամասա-
յին, մարզային, քաղաքային և շրջանային կոմիտեները, հենվելով էկոնոմի-
կայի ղեկավարման մեծ ու բազմակողմանի փորձի վրա, զգալիորեն կուժեղաց-
նեն իրենց ազդեցությունը տնտեսական կյանքի վրա։ Տվյալ դեպքում խոսքը
չի վերաբերում մանրախնդիր խնամակալությանը, սովետական և տնտեսական
մարմիններին փոխարինելուն։
Խոսքը վերաբերում է այլ բանի՝ մտածված և խստապահանջ կադրային
քաղաքականությանը, համապետական շահերի պաշտպանության գործում
հաստատակամությանը, նպատակասլացությանը, ընդունված որոշումների,
առավել ևս սովետական օրենքների ամեն մի խախտման, կուսակցական, կո-
մունիստական էթիկայի ամեն մի խախտման դեմ վճռական պայքարին։
Կենտրոնական կոմիտեն հսկայական նշանակություն է տալիս սկզբնական
կուսակցական կազմակերպությունների մարտականությանը։ Այն բանով, թե
ինչպես են աշխատում կոմունիստները, մեծապես պայմանավորված են աշ-
խատավորական կոլեկտիվներում տիրող մթնոլորտը, տրամադրությունը, հե-
տևաբար նաև՝ արտադրական ցուցանիշները։ Հարկավոր է, որ յուրաքանչյուր
կոմունիստ, իսկ մենք գրեթե 18 միլիոն ենք, իր տեղամասում բոլոր ուժերը,
փորձն ու գիտելիքները ի սպաս դնի ռեզերվների որոնմանը, աշխատանքի ար-
դյունավետության բարձրացմանը, աշխատանքային անձնվիրության արժանի
օրինակ ծառայի։ (Ծափահարություններ)։
1982 թվականը հագեցված կլինի քաղաքական խոշոր իրադարձություն-
ներով։ Տեղի կունենան արհմիությունների և կոմերիտմիության համագումար-
ներ։ Կանցկացվեն ժողովրդական դեպուտատների տեղական սովետների ընտ-
րություններ։ Կնշվի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների
Միության 60-ամյակը։
Այդ իրադարձություններից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատկությու-
նը, իր քաղաքական բովանդակությունը։ Եվ դրա հետ մեկտեղ դրանք բոլորը
կոչված են նոր հզոր խթան հանդիսանալու կուսակցության ու ժողովրդի միաս-
նության հետագա ամրապնդման, երկրի բոլոր ազգերի և ազգությունների ե՛լ
ավելի սերտ համախմբման, մասսաների քաղաքական, ստեղծագործական ակ-
տիվության վերելքի համար։
Վերջում կուզենայի շեշտել մի հասարակ միտք, ասաց ընկեր Լ. Ի. Բրեժ-
նևը։ Դա վերաբերում է բոլորին, անկախ նրանից, թե ով ինչպիսի պոստ է
զբաղեցնում, ով որտեղ է աշխատում։ Հարկավոր է ավելի լավ աշխատել։ Ավելի
լավ կազմել պլանները և ավելի լավ կատարել դրանք։ Ավելի լավ կազմակեր-
պել արտադրությունը և ավելի լավ արտադրել։ Մի խոսքով, աշխատել ավելի
արդյունավետ։ Սա է, ընկերնե՛ր, վերջին հաշվով, հիմնականը, վճռականը։
(Երկարատև ծափահարություններ)։

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ, ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻՆ ԵՎ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻՆ, ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ, ԱՐՀՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԵՎ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻՆ, ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Հայկական ՍՍՀ-ի հողագործների աշխատանքային հաղթանակի մասին հաղորդումը, որոնք կատարել են պետությանը հացահատիկ, խաղող, բանջարեղեն, շաքարի ճակնդեղ և կարտոֆիլ վաճառելու պլանները ու սոցիալիստական պարտավորությունները, գոհունակությամբ ընդունվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում: Ուրախալի է, որ հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները, աշխատելով լեռնային ոչ դյուրին պայմաններում, տարեցտարի ավելացնում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, հասնում կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման:

Ձեռք բերված հաջողությունների առթիվ ի սրտե շնորհավորում եմ Հայաստանի կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին, տնտեսությունների ղեկավարներին և մասնագետներին, գյուղատնտեսական, մթերող, տրանսպորտային կազմակերպությունների, արդյունաբերական ձեռնարկությունների և ուսումնական հաստատությունների կոլեկտիվներին, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողներին, հանրապետության բոլոր աշխատավորներին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ հանրապետության բոլոր կոմունիստները, գյուղի բոլոր աշխատավորները ավելի լրիվ կօգտագործեն կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական հարանուն զինվածությունը, գիտության նվաճումները և առաջավոր փորձը, կապահովեն դաշտերի և ֆերմաների արդյունավետության հետագա աճը, արժանի ավանդ կներդնեն ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կատարման գործում:

Ի սրտե ձեզ մաղթում եմ նոր հաջողություններ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում պլանների և պարտավորությունների կատարման գործում:

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**

# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## ԱՐԵՎՄՏԱԳԵՐՄԱՆԱԿԱՆ «ՇՊԻԳԵԼ» ՀԱՆԴԵՍԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ. Դուք երրորդ անգամ եք ԳՖՀ գալիս պետական այցով: 1978 թվականի Ձեր վերջին այցի ժամանակվանից աշխարհում իրադրությունը դարձել է պակաս կայուն, իսկ որոշ տեսակետներից՝ նաև ավելի վտանգավոր: Ձեր կարծիքով, ինչպիսի՞ դեր կարող էր խաղալ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը ստեղծված իրավիճակում և այդ կապակցությամբ ինչպիսի՞ նշանակություն եք Դուք տալիս Բոննում կայանալիք Ձեր բանակցություններին:

*ՊԱՏԱՍԽԱՆ. Կսկսեմ այն բանից, որ ուրախ եմ կրկին այցելելու ձեր երկիրը: Ես երկու անգամ եմ եղել ԳՖՀ-ում: Երկու դեպքում էլ մենք ունեցել ենք օգտակար բանակցություններ և հանդիպումներ: Ես գոհունակությամբ եմ վերհիշում դրանց մասին:*

*Կանցլեր Շմիդտի հրավերով ԳՖՀ կատարելիք իմ այցը մեր երկրների փոխշահավետ համագործակցության, 1970 թվականի պայմանագրի հիման վրա սովետաարևմտագերմանական հարաբերությունների կոնստրուկտիվ զարգացման գծի բնական շարունակությունն է: Մեր այդ կուրսը ամենայն որոշակիությամբ արտահայտվեց ՍՄԿԿ XXIV, XXV և XXVI համագումարներում: Մենք գիտենք, որ Բոննում ևս ԳՖՀ-ի և Սովետական Միության հարաբերությունները համարվում են որպես համաշխարհային քաղաքականության կարևոր տարր, որից քիչ չափով չի կախված Եվրոպայի կայուն խաղաղությունը:*

*Կանցլեր Հելմուտ Շմիդտի և ԳՖՀ-ի մյուս ղեկավարների հետ կարծիքներ փոխանակելիս թեմաներ, անշուշտ, չեն պակասի: Ինչպես ինձ թվում է, այժմ հատկապես կարևոր է որոշել, թե ինչպիսի գործողություններ կարող էր ձեռնարկել մեր երկրներից յուրաքանչյուրը մարդկության համար ամենակենսական և անհետաձգելի խնդրի՝ միջուկային աղետի կանխման և կայուն խաղաղության հուսալի հեռանկարի ստեղծման խնդրի լուծման համար:*

*Մեր երկու երկրները բազմիցս արտահայտվել են Եվրոպայում հնարավորին չափ ավելի ցածր մակարդակով ռազմական հավասարակշռություն հաստատելու օգտին, այդ թվում նաև միջուկային սպառազինությունների բնագավառում: Հարցն այն է, թե դա ինչպես անել: Այստեղ մեր հայացքները նկատելիորեն տարբերվում են: Բայց լուծում պետք է որոնել: Վերհիշում եմ, որ 1978 թվականի մայիսին իմ և կանցլեր Շմիդտի ստորագրած համատեղ դեկլարացիայում երկու կողմերը հստակորեն հանդես եկան հօգուտ այն բանի, որպեսզի ոչ ոք չձգտի հասնել ռազմական գերազանցության և հայտարարեցին, որ մոտավոր հավասարությունն ու պարիտետը բավական են պաշտպանությունն ապահովելու համար: Մենք դրան հավատարիմ ենք նաև այժմ: Ահա ձեզ հետագա բանակցությունների հիմքը և ելակետը:*

*Դուք հարցնում եք մեր հիրավի բարդ աշխարհում ԳՖՀ-ի դերի մասին: Կարծում եմ, որ 80-ական թվականների սկզբներին ճիշտ այնպես, ինչպես 70-ական թվականների սկզբներին էր, ԳՖՀ-ն կանգնած է արմատական բնույթի լուծումների առջև: Արդյոք կշարունակվի՞ և հետագայում կզարգանա՞ այն կուրսը, որն այնպես մեծացրեց ԳՖՀ-ի կշիռը եվրոպական և համաշխարհային*

*քաղաքականության մեջ, թե՞ այդ տարիներին կուտակված կապիտալը կծախսվի անպտուղ և վտանգավոր առճակատումներում: Ուզում եմ հուսալ, որ կանցլեր Շմիդտի, ԳՖՀ-ի մյուս պետական ու քաղաքական գործիչների հետ մեր բանակցությունների և զրույցների շնորհիվ կաճի երկուստեք վստահությունն այն բանում, որ մեր երկրները կպահպանեն փորձված և իրեն արդարացրած գիծը՝ վստահությանը վստահությամբ պատասխանելու, ձեռք բերածը պահպանելու, տարբեր բնագավառներում երկկողմ համագործակցությունը հետևողականորեն և անդուլ զարգացնելու կարողությունը: Այդ գիծը լավ կհամապատասխաներ սպառազինությունների մրցավազքը զսպելու, լարվածության թուլացման պրոցեսը և միջազգային անվտանգությունն ամրապնդելու ընդհանուր ջանքերին:*

ՀԱՐՑ. Ժամանակին հատկապես մեծ հույսեր էին դրվում համատեղ տնտեսական նախագծերի վրա: Ձեր տեսակետից ինչպիսի՞ք են մեր երկու երկրների տնտեսական համագործակցության հեռանկարները արդի պայմաններում:

*ՊԱՏԱՍԽԱՆ. Մեր կարծիքով ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի տնտեսական համագործակցությունը վատ չի զարգանում և լավ ապագա ունի:*

*ԳՖՀ-ն այսօր արևմտյան երկրներից Սովետական Միության առաջատար առևտրական պարտնյորներից մեկն է: ՍՍՀՄ-ում գնահատում են այն հստակությունն ու բարեխղճությունը, որով մեր արևմտագերմանական պարտնյորները կատարում են տնտեսական պայմանագրերով ու համաձայնագրերով ստանձնած իրենց պարտավորությունները: Մենք, հասկանալի է, պատասխանում ենք նմանապես:*

*Որքան ես հասկանում եմ, ՍՍՀՄ-ի հետ խոշոր մասշտաբի և երկարաժամկետ տնտեսական կապերի զարգացումը օգնում է ԳՖՀ-ին լուծելու իր էկոնոմիկայի առջև կանգնած լուրջ պրոբլեմները: Ձեր երկիրը մյուսներից ոչ պակաս կարիք ունի էներգիայի, հումքի, նյութերի հուսալի աղբյուրների, արտասահմանյան պատվերների՝ բնակչության զբաղվածությունն ապահովելու համար: Սովետական Միության համար ևս ԳՖՀ-ի հետ համագործակցությունը օգտավետ է մեր տնտեսական կյանքի մի շարք կարևոր բնագավառներում:*

*Շատ էական է նաև այն, որ մեր տնտեսական կապերը ոչ թե պարզապես հարատևում են այսօրվա պահանջներով, այլ կառուցվում են լայն հեռանկարով: Այդպիսի համագործրակցության լավ օրինակ են, ըստ իս, մեր մի քանի համատեղ նախագծերը, որոնք միտում են դեպի 21-րդ դարը: Դրանք, իհարկե, ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական նշանակություն ունեն՝ բառիս լավագույն իմաստով: Չէ՛ որ տնտեսական կապերի մեջ երկարաժամկետ հեռանկարի կողմնորոշումը նաև կայուն խաղաղ գոյակցության, բարիդրացիության կողմնորոշում է:*

*Տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության սովետա-արևմտագերմանական խառը հանձնաժողովի՝ վերջերս Մոսկվայում կայացած հերթական նստաշրջանը, այդ կապակցությամբ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ա. Տիխոնովի և նրա տեղակալ Լ. Ա. Կոստանդովի զրույցները էկոնոմիկայի ֆեդերալ մինիստր Օ. Լամբսդորֆի և ԳՖՀ-ի մյուս ներկայացուցիչների հետ ընթացան հենց այդպիսի տեսանկյունով, նշանակետ ունենալով ապագան:*

*Դատելով ըստ այդ նստաշրջանի արդյունքների, մեր հարաբերությունների հետագա զարգացման համար պատկառելի հիմք կա: Մենք զգացինք ԳՖՀ-ի մոտեցման լրջությունը խողովակների մատակարարումների փոխարեն սովետական գազի նոր մատակարարումների վերաբերյալ և Սովետական Միությունում արևմտագերմանական մասնակցությամբ Եվրոպայի ու Սիբիրի միջև գազամուղ կառուցելու վերաբերյալ պլանավորված գործարքի նկատմամբ: Հայտաբերվեցին փոխշահավետ համագործակցության այլ հնարավորություններ ևս:*

*Կամենում եմ մի բան ևս ավելացնել մեր տնտեսական համագործակցության առիթով. այդ համագործակցությունը ոչ ոքի վնաս չի հասցնում, իսկ, վերջին հաշվով, օգուտ է բերում բոլորին, քանի որ ամրապնդում է Եվրոպայի և ամբողջ աշխարհի խաղաղության հիմքերը:*



ՀԱՐՑ. Արևելքի և Արևմուտքի հարաբերությունները այժմ լրջորեն բարդացել են: Ինչպե՞ս եք Դուք գնահատում աշխարհում տիրող իրադրությունը և մասնավորապես լարվածության թուլացման բախտը, որը շատ քաղաքագետների գրեթե անդառնալի էր թվում:

*ՊԱՏԱՍԽԱՆ. Աշխարհն այսօր անհանգիստ է: Տարբեր աշխարհամասերում երևան են գալիս «տաք կետեր»: Շարունակվում է մահաբեր սպառազինությունների մրցավազքը: Ստեղծվում են դրանց նոր տեսակներ, որոնք հատկապես վտանգավոր են նրանով, որ դրանք, ինչպես ասում են մասնագետները, իջեցնում են միջուկային պատերազմի շեմքը, այսինքն՝ դրա ծագումը դարձնում ավելի հավանական: Այս պայմաններում հատկապես նենգավոր են Արևմուտքի որոշ ստրատեգների ու քաղաքագետների դատողությունները ինչ-որ «սահմանափակ» միջուկային պատերազմի թույլատրելիության և այդ պատերազմում հաղթանակ տանելու հնարավորության մասին:*

*Գուցե և ոմանք հույս ունեն, թե կհաջողվի միջուկային պատերազմը սահմանափակել Եվրոպայի տերիտորիայով և դա իրենց համար ընդունելի տարբերակ են համարում: Հարկ կա՞ արդյոք ասելու, որ եվրոպացիներին նման տարբերակը քիչ է ձեռնտու: Նրանց համար դա կլիներ կործանում, աղետ, որը կհանգեցներ ամբողջ ժողովուրդների և նրանց բազմադարյան քաղաքակրթության ոչնչացման:*

*Դե, իսկ եթե խոսելու լինենք ըստ էության, ապա ոչ մի «սահմանափակ» միջուկային պատերազմ առհասարակ չի կարող լինել: Եթե միջուկային պատերազմ բռնկեր, լինի դա Եվրոպայում, թե այլ տեղում, այն անխուսափելիորեն և անկասելիորեն համաշխարհային բնույթ կստանար: Այդպիսին է արդեն բուն պատերազմի և ժամանակակից սպառազինությունների ու միջազգային հարաբերությունների տրամաբանությունը: Դա հարկավոր է պարզ տեսնել և հասկանալ:*

*Այնպես որ նրանք, ովքեր, գուցե, հույս ունեն հրկիզել միջուկային նկուղը և ապա մի կողմ քաշվել, թող չմխիթարեն իրենց պատրանքներով:*

*Վերջերս ձեր հանդեսի էջերում հրապարակվեց մի գիտնականի հետ կայացած հարցազրույց, որին անվանում են ամերիկյան նեյտրոնային ռումբի «հայր»: Նա այսպիսի արտահայտություն նետեց՝ բոլոր մարդիկ հրեշներ են: Այդ ժամանակ ներկա գտնվող նրա դուստրը հարցրեց՝ այդ դեպքում դո՞ւ էլ ես հրեշ:— Այո՛,— պատասխանեց նա: Եվ դեռ ավելացրեց, որ պատերազմը մարդու բուն էության մեջ է: Ահա ձեզ այն մարդկանց մարդատյաց հոգեբանության մի փայլուն օրինակ, ովքեր այսօր այնպես եռանդուն կերպով բորբոքում են միջուկային սպառազինությունների մրցավազքը:*

*Ընդ որում բացահայտորեն նպատակ է դրվում բթացնել եվրոպացիների զգոնությունը, նրանց վարժեցնել նույն նեյտրոնային զենքը ընկալելու որպես սովորական բան, «պաշտպանողական» միջոց, մի խոսքով, ականի կամ նռնակի նման մի բան: Մինչդեռ իրականում բանը բնավ էլ այդպես չէ: Չէ՞ որ, ինչպես ասում են մասնագետները, մի քանի նեյտրոնային լիցքեր բավական են ոչնչացնելու ամեն կենդանի բան այնպիսի քաղաքում, ինչպես, ասենք, Համբուրգն է:*

*Սրանք բոլորը տհաճ խոսակցություններ են, բայց ավելի լավ է բարձրաձայն և ուղղակի ասել ճշմարտությունը, որն առնչվում է ամենքի հետ: Ասել, քանի դեռ ուշ չէ, քանի դեռ կարելի է կանխել աղետը: Նեյտրոնային զենքի ստեղծումը պրոբլեմ չէ: Իսկական պրոբլեմը քաղաքական, մարդասիրական պրոբլեմն է— ինչպես թույլ չտալ այդպիսի զենքի երևան գալն ու գործադրումը: Մի անգամ եվրոպացիներին հաջողվեց հասնել այդ բանին: Դա հիմա էլ ուժից վեր չէ:*

*ՆԱՏՕ-ի երկրների մի քանի մայրաքաղաքներում պնդում են, թե իբր Սովետական Միությունն է մեղավոր, որ աշխարհի վրա թանձրացել են ամպերը: Բայց եթե վերանանք պրոպագանդիստական պատրանքներից և դիմենք փաստերին, ապա պարզ կդառնա, որ դա չարամիտ հերյուրանք է:*

*Սովետական Միությունը ոչ ոքի չի սպառնում, ոչ ոքի վրա մտադիր չէ*

կհասնի բաժանվելուն, բայց, այնուամենայնիվ, վերջիվերջո այդ հիմնական տնտեսական անհրաժեշտությունն ինքն իր համար ճանապարհ կհարթի... Սովետական հանրապետության և ամբողջ մնացած կապիտալիստական աշխարհի միջև առևտրական ճիշտ հարաբերությունների զարգացումը անխուսափելիորեն առաջ կգնա» (ПСС, т. 45, стр. 71): Կյանքը հաստատեց և շարունակում է հաստատել այս խոսքերի իմաստությունը:

Իսկ ինչ վերաբերում է Եվրոպայում խաղաղ կապերի այդ հյուսվածքի ստեղծման գործում Ֆեդերատիվ Հանրապետության դերին և այդ իմաստով մեր երկու երկրների հարաբերությունների նշանակությանը, ապա այդ մասին ես արդեն ասացի:

ՀԱՐՑ. Վրա է հասնում սպառազինությունների մրցավազքի նոր փուլ: Միջին հեռավորության ինչպես սովետական, այնպես էլ ամերիկյան միջուկային զենքի պրոբլեմը դարձել է Եվրոպայի համար առավել սուր պրոբլեմներից մեկը: Արդյոք Դուք այդ զարգացումը կասեցնելու հնարավորություններ տեսնո՞ւմ եք:

ՊԱՏԱՍԽԱՆ. Ինձ արդեն քանիցս հարկ է եղել ասելու. մենք գտնում ենք, որ չկա զինաթափման այնպիսի բնագավառ և չկա զենքի այնպիսի կատեգորիա, որոնց վերաբերյալ անկարելի լիներ պայմանավորվածության գալ: Եվրոպայում միջին հեռավորության միջուկային միջոցների պրոբլեմը ևս կարելի է լուծել ի շահ եվրոպական բոլոր ժողովուրդների: Կարելի է և պետք է լուծել: Բայց դա կհաջողվի անել միայն այն դեպքում, եթե կայուն խաղաղության կառուցմանը բոլոր կողմերը վերաբերվեն որպես ընդհանուր խնդրի:

Ի՞նչ է նշանակում դա կոնկրետ կերպով: Ձեր հանդեսը (թարգմանաբար) կոչվում է «Հայելի»: Թո՛ղ, ուրեմն, այդ հայելին արտացոլի իսկական պատկերը:

Նախ՝ վերհիշենք, թե ինչպես էին ծավալվում այն իրադարձությունները, որոնք վերջիվերջո հասցրին Եվրոպայում միջուկային զենքի հետ առնչված այժմյան իրավիճակին: 50-ական թվականներից ԱՄՆ-ը Եվրոպայում և նրան հարող ծովերում տեղաբաշխեց միջուկային զենք ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների կենսական կենտրոններին հարվածներ հասցնելու համար: Այդ զենքն սկսեցին անվանել «առաջավոր բազավորման միջոցներ», իսկ այն դոկտրինան, որին այդ միջոցներն սպասարկում էին, մի ժամանակ Վաշինգտոնում անվանվում էր «պատերազմի եզրին հավասարակշռություն պահպանելու» դոկտրինա: Հենց այն ժամանակ կամ էլ դրանից քիչ անց միջուկային զենքը հայտնվեց Արևմտյան Եվրոպայում և ՆԱՏՕ-ի անդամ մի քանի այլ երկրներում:

Փորձեցեք մտովի ձեզ դնել մեր տեղը: Կարո՞ղ էինք արդյոք մենք անտարբերությամբ դիտել, թե ինչպես են մեզ բոլոր կողմերից շրջապատում ռազմական բազաներով, ինչպես են Եվրոպայի տարբեր շրջաններից սովետական քաղաքների ու գործարանների վրա ուղղվում ավելի ու ավելի մեծ թվով միջուկային մահաբերներ, միևնույնն է, թե ինչ կերպարանքով՝ ծովային թե ցամաքային հրթիռների՞, թե՞ ավիառումբերի և այլն:

Սովետական Միությունը պետք է ստեղծեր միջոցներ սեփական պաշտպանության համար, և ոչ թե որևէ մեկին և ամենից քիչ Եվրոպային սպառնալու համար: Նա ստեղծեց այդ միջոցները և տեղաբաշխեց իր տերիտորիայում այնպիսի քանակությամբ, որը հավասարակշռում է նրանց համապատասխան սպառազինությունները, ովքեր իրենց հայտարարել են մեր պոտենցիալ հակառակորդներ:

Ոչ այն ժամանակ, ոչ էլ այժմ մենք միջուկային դիմակայությունը, մանավանդ Եվրոպայում, չենք համարել և չենք համարում լավագույն լուծումը: ՍՍՀՄ-ը բազմիցս առաջարկել է թեկուզ սահման դնել այդ բնագավառում մրցակցելուն: Բայց բանն այնպես էլ չհասավ սույն բանակցություններին: Ինչո՞ւ: Ոչ 60-ական, ոչ էլ 70-ական թվականներին ԱՄՆ-ի կառավարությունները չկամեցան, որ միջին հեռավորության նրանց սիստեմները, այսինքն՝ այսպես կոչված առաջավոր բազավորման միջոցները, նույնպես դառնան բանակցությունների առարկա և դրանց վրա տարածվեն հնարավոր համաձայնություն-



ները: Դատելով ըստ ամենայնի, միջին հեռավորության միջուկային ուժերի ստեղծված հարաբերակցությունն այն ժամանակ ամերիկացիների համար ձեռնտու էր:

Արևմտյան պրոպագանդան վերջին տարիներս սկսել է բորբոքել Արևմըտյան Եվրոպային ուղղված «սովետական սպառնալիքի» թեման և հաղորդումներ տպագրել «ՍՍ—20» հրթիռների վերաբերյալ: Մենք 1979 թվականի աշնանն առաջարկեցինք, որ ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի ներկայացուցիչները առանց ձգձգումների հանդիպում ունենան դրությունը քննարկելու համար և պայմանավորվեն նույնիսկ ավելի ցածր մակարդակով պարիտետի շուրջը, քան ըստեղծվել էր մինչ այդ պահը: Սովետական նախաձեռնության պատասխանը հանդիսացավ ՆԱՏՕ-ի 1979 թվականի դեկտեմբերյան «երկյակ» որոշումը «լրազինման» վերաբերյալ:

Եկեք տեսնենք, թե, համենայնդեպս, ինչպիսին է միջուկային ուժերի հարաբերակցությունը Եվրոպայում:

Եթե միջին հեռավորության միջոցների կազմի մեջ մտցնենք ՆԱՏՕ-ի երկըրների այն հիմնական հրթիռային ու ավիացիոն միջուկային սպառազինությունները, որոնք կարող են Սովետական Միության տերիտորիայի օբյեկտներին հասնել արևմտաեվրոպական երկրների տերիտորիաներից և Եվրոպային հարող ջրային տարածություններից, այսինքն՝ գործողության հազար կիլոմետր և ավելի հեռավորության (շառավղով), (սակայն, իհարկե, ավելի պակաս, քան միջմայրցամաքային հեռավորության) սպառազինությունները և ՍՍՀՄ-ի եվրոպական մասում տեղաբաշխված համանման հեռավորության սովետական համապատասխան սպառազինությունները, ապա Եվրոպայում ՆԱՏՕ-ի և ՍՍՀՄ-ի միջև ներկայումս մոտավոր հավասարություն գոյություն ունի այդպիսի սպառազինությունների գծով: ՆԱՏՕ-ի երկրներն այստեղ ունեն 986 այդպիսի կրողներ, այդ թվում ԱՄՆ-ը՝ ավելի քան 700 (Ֆ—111, ՖԲ—111, Ֆ—4 ինքնաթիռներ, Եվրոպան ողողող ծովերում և օվկիանոսներում գտնվող ավիակիրների վրա եղած ինքնաթիռները): Բացի դրանից, 64 բալիստիկ հրթիռներ և 55 ռմբակոծիչներ կազմում են Անգլիայի պոտենցիալը: 144 միավոր (98 հրթիռ և 46 ռմբակոծիչ) ունի Ֆրանսիան:

Սովետական Միությունն ունի համանման սպառազինությունների 975 միավոր: Իրավիճակը չփոխվեց նաև այն բանից հետո, երբ ՍՍՀՄ-ը սկսեց «ՍՍ—4» և «ՍՍ—5» իր ծառայությունը լրացրած հրթիռները փոխարինել ավելի կատարյալ «ՍՍ—20» հրթիռներով: Սպառազինվելով նոր հրթիռով՝ մենք հանում ենք մեկ կամ երկու հին հրթիռ, իսկ դրանք իրենց արձակման կայանքով վերածում ջարդոնի: Ճիշտ է, որ «ՍՍ—20»-ը կարող է կրել երեք մարտագլխիկ: Բայց դրանց միագումար հզորությունն ավելի պակաս է, քան նախկին մեկ մարտագլխիկինը: Հետևաբար հին հրթիռները փոխելու պրոցեսում կրողների ընդհանուր թիվը մեզանում նվազել է, և միաժամանակ կրճատվել է միջին հեռավորության մեր միջուկային պոտենցիալի միագումար հզորությունը:

Սակայն միջին հեռավորության նատօյական միջոցները ևս կատարելագործվում են և ավելացվում: Օրինակ, Անգլիայում արդիականացված վեց մարտագլխիկանի բալիստիկ հրթիռներով են զինվում «Պոլյարիս» սուզանավերը (ներկայումս եղած երեք մարտագլխիկանիի փոխարեն): Ֆրանսիայում նախատեսված է միաբլոկ գլխամասով ցամաքային և ծովային բազավորման հրթիռները փոխարինել յոթ մարտագլխիկանի հրթիռներով: Ավելացվում է նաև ֆրանսիական հրթիռակիր սուզանավերի թիվը:

Եվ սա այն դեպքում, երբ միանգամյա գործադրման միջուկային մարտական լիցքերի թվով, որը միանգամայն էական ցուցանիշ է, ՆԱՏՕ-ն այժմ արդեն ունի մեկուկես անգամվա գերազանցություն:

Բերված տվյալները, որոնք արտացոլում են ռեալ իրականությունը, աներկբայորեն ցույց են տալիս միջին հեռավորության զենքի հարցում ՍՍՀՄ-ի «անհանդուրժելի գերազանցության» վերաբերյալ և «լրազինման անհրաժեշտության» վերաբերյալ ՆԱՏՕ-ի բարձրացրած աղմուկի մտացածինությունը: Իսկ եթե բանը դրան է հասել, ապա ավելի շուտ Սովետական Միությունը պետք է դներ լրազինման հարցը:

պումներն ու խորհրդակցությունները, իսկ վերջին հաշվով՝ այնպիսի գործնական քայլեր, որոնք նպաստում են ժողովուրդների մերձեցմանը, միջազգային մթնոլորտի նորմալացմանը, այնպիսի արգելքների վերացմանը, ինչպիսիք են փոխադարձ անվստահությունը, կանխակալությունը և վախը։

Մենք Սովետական Միությունում կցանկանայինք հուսալ, որ այն կոնյունկտուրային պրոպագանդիստական շարժառիթները, որոնցով առաջնորդվում են Մադրիդի հանդիպմանը մասնակցող որոշ արևմտյան պատվիրակություններ, չեն խանգարի համագործակցության ֆունդամենտալ պահանջմունքներին, և որ կհաջողվի պայմանավորվածության հասնել Եվրոպայում վստահության ու անվտանգության ամրապնդման և զինաթափման միջոցառումներին նվիրված եվրոպական կոնֆերանս գումարելու շուրջը։ Վստահությունը անկարելի է առանց փոխադարձության և իրավահավասարության։ Միջազգային անվտանգությունը գոյանում է պայմանավորվող կողմերի միատեսակ անվտանգությունից։

Համաձայնելով վստահության միջոցները ՍՍՀՄ-ի ամբողջ եվրոպական մասի վրա տարածելուն, մենք, բնականաբար, հանդիպական քայլեր ենք սպասում Արևմուտքից։ ՆԱՏՕ-ի եվրոպական գոտում ռազմական պատրաստությունները սկսվում են ոչ թե Եվրոպայի մայրցամաքային․ եզրաշերտից։ Դա գիտե յուրաքանչյուր ոք։ Հետևաբար Եվրոպային հարող կղզիների տարածքները, ծովային ու օվկիանոսային համապատասխան ջրատարածքները և դրանց օդային տարածությունը նույնպես պետք է ընդգրկվեն։ Խոսքն այս մասին է։

ՀԱՐՑ. Եվրոպայում նորից դիսկուսիաներ են ծավալվել միջուկազերծ գոտիների առթիվ: Դուք ի՞նչ եք մտածում մեր մայրցամաքի տարբեր մասերում այդպիսի գոտիների ստեղծման մասին:

ՊԱՏԱՍԽԱՆ. Դուք հարցնում եք միջուկազերծ գոտիների մասին։ Նրանց համար, ովքեր լրջորեն են դնում միջուկային զենքը չտարածելու և խաղաղության կայունացման խնդիրը, միջուկազերծ գոտիների ստեղծման կարևորությունն ակնբախ է։ Եվ ինձ թվում է, այստեղ պայմանավորվածությունների ուղին այնքան էլ տատասկոտ չէ։

Իսկապես, շատ պետություններ են միացել միջուկային զենքը չտարածելու պայմանագրին, ընդ որում նրանց մեծ մասի տերիտորիաներում այդպիսի զենք չկա էլ։ Հազիվ թե կարող են տարակույսներ լինել, որ նրանց մեծ մասը թանկ է գնահատում իր միջուկազերծ ստատուսը, ուզում է դրանում տեսնել այն բանի գրավականը, որ միջուկային կոնֆլիկտի մեջ չի ներքաշվի։ Եթե միջուկային տերությունները պարտավորություն ստանձնեին հարգել այդպիսի պետությունների միջուկազերծ ստատուսը, նրանց տերիտորիաներում միջուկային զենք չտեղաբաշխել, ինչպես նաև նրանց դեմ ոչ մի պարագայում այդպիսի զենք չգործադրել, ապա աշխարհի տարբեր շրջաններում իսկույն ևեթ պայմաններ կստեղծվեին մի քանի միջուկազերծ գոտիների ստեղծման համար։

Վերջերս Ֆինլանդիայից ինձ դիմեցին այսպիսի հարցադրումով. Սովետական Միությունը ինչպե՞ս կվերաբերվեր Եվրոպայի հյուսիսում միջուկազերծ գոտի հիմնելուն։ Մեր պատասխանը տրվեց հրապարակորեն, և ես այն չեմ մեջբերի ամբողջովին։ Միայն կհիշեցնեմ, որ ՍՍՀՄ-ը պատրաստակամություն հայտնեց գոտու մասնակից երկրների հետ կնքելու բազմակողմ համաձայնագիր կամ նրանցից յուրաքանչյուրի հետ՝ առանձին համաձայնագիր՝ պարտավորություն ստանձնելով միջուկային զենք չգործադրել Հյուսիսային Եվրոպայի դեմ։ Մենք մեր այս պարտավորությունը չենք պայմանավորում գոտու նկատմամբ մյուս միջուկային տերությունների դրական պարտավորություններով, թեպետև հասկանալի է, գոտու մասնակիցները ավելի մեծ անվտանգության մեջ կլինեին, եթե միջուկազերծ ստատուսի հարգման երաշխիքները տրվեին նաև ՆԱՏՕ-ի միջուկային տերությունների կողմից։

Մենք չենք բացառում Հյուսիսային Եվրոպայի միջուկազերծ գոտու ստեղծման կապակցությամբ մեր սեփական տերիտորիայում որոշ միջոցառումներ իրականացնելու հնարավորությունը։ Առանց մանրամասների մեջ մտնելու ասեմ, որ խոսքը կարող էր վերաբերել էական միջոցառումների։



Եվրոպայի հյուսիսը մեր մայրցամաքի ամենևին էլ միակ վայրը չէ, որտեղ
ակտիվորեն քննարկվում է միջուկազերծ գոտիների ստեղծման հնարավորու-
թյունը։ Այս գաղափարն զգալի ժողովրդականություն է վայելում Բալկաննե-
րում։ Դրա նկատմամբ հետաքրքրություն են ցուցաբերում միջերկրածովյան
շատ երկրներ։ Մենք, բնականաբար, համակրում ենք այդ գաղափարները։

Սովետական Միությունը հանդես է գալիս այն բանի օգտին. որպեսզի
Եվրոպայում միջուկային զենքի ոչ մի տեսակի զինանոց չընդլայնվի, որ, ընդ-
հակառակն, սկսվի այդ զենքի կրճատման պրոցես։ Եվ վերջացնեմ նրանով,
ինչից սկսեցի. եթե Եվրոպայի այս կամ այն մասում միջուկազերծ գոտու
ստեղծման հնարավորություն առաջանա, ապա ՍՍՀՄ-ը ամենագործուն պաշտ-
պանություն ցույց կտա այդ ուղղությամբ կատարվելիք գործնական քայլերին։

ՀԱՐՑ. Լեհաստանի իրադարձությունների զարգացումը ԳՖՀ-ում գնա-
հատում են որպես միանգամայն լուրջ: Արդյոք կարելի՞ է ելնել այն բանից,
որ Լեհաստանի իրադրության նորմալացման հարցը Սովետական Միությու-
նում դիտվում է Եվրոպայի խաղաղության պահպանման հետ սերտորեն
կապված:

ՊԱՏԱՍԽԱՆ. Անշուշտ խաղաղության պահպանման հետ, և, ես կավելաց-
նեի՝ Եվրոպայում սոցիալիստական Լեհաստանի տեղի հետ սերտորեն կապված։

Արևմուտքում շատ են չարաշահում Լեհաստանի հարցը։ Չարաշահումները
տարբեր են, բայց դրանց մեծ մասը հետապնդում է նույն նպատակը՝ է՛լ ավելի
ապակայունացնել այդ երկրի իրադրությունը, այնտեղ թուլացնել սոցիալիզմի
դիրքերը, բարդացնել Լեհաստանի ու Սովետական Միության հարաբերություն-
ները և, իհարկե, այդ ամենից համապատասխան օգուտներ կորզել ՆԱՏՕ-ի
բլոկի դիտավորությունների համար։

Ոմանք շտապում են ժողովուրդների գլխին տեղալու «սառը» կամ մի այլ
պատերազմի դժվարությունները։ Սովետական Միությունը նման գործերով չի
զբաղվում և զբաղվելու մտադրություն էլ չունի։ Լեհաստանը մեզ համար բա-
րեկամ է, բարի դրացի և դաշնակից։ Մենք նրան վերաբերվում ենք ինչպես
վայել է դաշնակցին և բարեկամին։ ՍՍՀՄ-ը ջանում է լեհերի համար նաև
դյուրացնել տնտեսական դժվարություններից դուրս գալը, այդ գործում նրանց
համապատասխան օգնություն ցույց տալով իր հնարավորությունների ներ-
ծին չափով։

Լավ կլիներ, եթե Արևմուտքում ըմբռնեին, որ խաղաղությունը և անդորրը
հարկավոր են Եվրոպայի բոլոր պետություններին և ոչ թե միայն սոցիալիս-
տական ընկերակցության երկրներին։

---

գային կյանքում ողջ դրականը ժողովուրդների գիտակցության մեջ հաստատապես կապվում է Սովետական Միության քաղաքականության հետ։ Եվ այժմ էլ ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը, հետևելով XXVI համագումարի ցուցումներին, շարունակում են հետևողականորեն իրականացնել հիրավի մարդասիրական, լենինյան արտաքին քաղաքական կուրսը։ Ցուցաբերելով զսպվածություն, հաստատակամություն, սկզբունքայնություն, Սովետական Միությունը լի է պրովոկացիաների չենթարկվելու և միաժամանակ զանազան թշնամական կամպանիաներին աներեր կերպով հակազդելու վճռականությամբ՝ սկսած «սովետական ռազմական սպառնալիքի» մասին զրպարտչական առասպելից ու վերջացրած «մարդու իրավունքների պաշտպանության» երեսպաշտական կամպանիայով կամ Մոսկվային «միջազգային տեռորիզմի» մասնակցություն վերագրելու փորձերով։ Հստակորեն ու անշեղորեն կենսագործվում է ՍՄԿԿ XXVI համագումարի առաջ քաշած դրույթն այն մասին, որ «կուսակցության և պետության արտաքին քաղաքական գործունեության հիմնական ուղղությունը եղել և մնում է պայքարը պատերազմի սպառնալիքը թուլացնելու, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու համար»։

Համաշխարհային քաղաքականության կիզակետում շարունակում է մնալ 80-ական թվականների համար համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը։ Այն ընդգրկում է ինչպես հրթիռամիջուկային, այնպես էլ սովորական զենքի կրճատման միջոցառումներ, պարունակում է գոյություն ունեցող կոնֆլիկտների և ճգնաժամային իրավիճակների կարգավորման ու նորերի կանխման առաջարկություններ, տոգորված է լարվածության թուլացումը խորացնելու և բոլոր մայրցամաքներում պետությունների խաղաղ համագործակցությունը զարգացնելու ձգտմամբ։ Նրանում արտահայտվում է խաղաղության ու անվտանգության բոլոր հրատապ հարցերի վերաբերյալ բանակցություններ վարելու, մյուս երկրների ուզածդ կոնստրուկտիվ գաղափարներին ուշադրությամբ վերաբերվելու Սովետական Միության պատրաստակամությունը։

ՍՄԿԿ XXVI համագումարի արտաքին քաղաքական նախաձեռնությունները սահմանում են մեր օրերի միջազգային կյանքի հիմնական թեմատիկան։ Բայց դրանք բնավ չեն տառապում րոպեականությամբ։ Սովետական արտաքին քաղաքականության առջև համագումարի դրած խնդիրները որպես մեր դիվանագիտության պրակտիկ գործունեության հիմունքներ ունեն ինչպես այժմեական, այնպես էլ երկարաժամկետ նշանակություն։ Սովետական խաղաղ նախաձեռնությունները, որոնք շարադրվեցին համագումարում և ընկեր Լ. Ի. Բրեժնևի հետագա ելույթներում, կոնկրետ են ու համապարփակ, կոնստրուկտիվ բնույթ են կրում։ Դրանք վերաբերում են Եվրոպային ու Միջերկրական ծովին, Մերձավոր Արևելքին ու Աֆրիկային, Հեռավոր Արևելքին ու Հարավ-արևելյան Ասիային։ Այդ նոր գաղափարները, կոնցեպցիաներն ու առաջարկությունները, բացելով հավասարության և միատեսակ անվտանգության վրա հիմնված փոխադարձորեն ընդունելի լուծումներ գտնելու ռեալ հնարավորություններ, ոչ մի այնպիսի բան չեն պարունակում, որը միակողմանի օգուտ ստանալու նպատակ հետապնդեր։

Մեր կուսակցությունն ու սովետական պետությունը հաստատակամ, բազմակողմանի ու հետևողական աշխատանք են ծավալել համագումարի արտաքին քաղաքական ծրագրի իրականացման նպատակով։ Վերջին ամիսների իրադարձություններն ակներևաբար հաստատում են, որ այն բարերար ներգործություն կունենա ընթացիկ տասնամյակի իրադրության զարգացման վրա։ Միանգամայն ակնհայտ է, որ առանց ՍՍՀՄ-ի արած առաջարկությունների իրականացման նպատակով Սովետական Միության և սոցիալիզմի եղբայրական երկրների ակտիվ, նպատակամետ գործունեության՝ իրադրությունն աշխարհում է՛լ ավելի բարդ ու պայթյունային կլիներ։ Ավելին, այդ առաջարկությունների հրատապությունը շարունակում է աճել, որքանով որ իմպերիալիստական տերությունների, ամենից առաջ ԱՄՆ-ի գործողությունները չեն վկայում լարվածության թուլացման պրոցեսն արգելակելու, միջազգային քաղաքական կլիման վատթարացնելու գծից որևէ նահանջի մասին։



Սովետական արտաքին քաղաքական առաջարկություններում ու գործողություններում այսօր, ինչպես և նախկինում, գլխավոր տեղերից մեկը զբաղեցնում է Եվրոպան։ Եվ դա հասկանալի է. հենց այն կոնֆլիկտներն են արդեն երկու անգամ վերաճել համաշխարհային պատերազմի, որոնք սկսվել են այս մայրցամաքում, որտեղ այժմ մեկը մյուսից անմիջական մոտիկության վրա կենտրոնացված են արդիականության այնքան հզոր ռազմական պոտենցիալները։ Միևնույն ժամանակ աշխարհի այժմյան իրավիճակի առանձնահատկությունը կայանում է նրանում, որ պատերազմական վտանգի արդեն գոյություն ունեցող օջախների հետ միասին հենց այստեղ է ծագում նման մի նոր օջախ։ Դրա իրական հաստատումը դարձավ ՆԱՏՕ-ի իր դաշնակիցներին Միացյալ Նահանգների պարտադրած պլանները՝ արևմտաեվրոպական մի շարք երկրների տարածքում գրեթե 600 նոր ամերիկյան միջուկային հրթիռներ տեղադրելու վերաբերյալ, որոնք կուղղվեն Սովետական Միության և Վարշավայի պայմանագրի մասնակից մյուս երկրների դեմ։ Այն ժամանակ, երբ ՍՍՀՄ-ն արևմտաեվրոպական երկրներին առաջարկում է մայրցամաքի քաղաքական ու ռազմական անվտանգությունը կառուցել համաեվրոպական տնտեսական, քաղաքական, գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության հուսալի հիմքի վրա, որը հատկապես 1975 թվականի Հելսինկիի խորհրդակցությունից հետո շոշափելի արդյունքներ է տվել, Պենտագոնը Եվրոպան դիտում է ոչ այլ կերպ, քան որպես ապագա «ռազմական գործողությունների թատերաբեմ», որտեղ կարող են իրականացվել այսպես կոչված «սահմանափակ» միջուկային պատերազմի պլանները, որը, ինչպես կարծում են օվկիանոսի այն կողմում, չի դիպչի ԱՄՆ-ի տարածքին։ Միաժամանակ Անգլիայի, ԳՖՀ-ի և մի շարք այլ երկրների ղեկավար գործիչները, հակաիմպերիալիստական ուժերի հարաճուն հաջողությունների պայմաններում բուրժուազիայի դասակարգային համերաշխությունից դրդված և ի հաճույս իրենց անդրօվկիանոսյան պարտնյորների, պատրաստ են աջակցել եվրոպական հողում «սահմանափակ» միջուկային պատերազմի համար պայմաններ ստեղծելու Պենտագոնի ճիգերին, համաձայնելով, այդպիսով, ամերիկյան իմպերիալիզմի «միջուկային պատանդների» դերին։

Արդեն արևմտաեվրոպական պետությունների տերիտորիայում ամերիկյան նոր հրթիռամիջուկային համակարգեր տեղադրելու ՆԱՏՕ-ի պլանները հարուցեցին մայրցամաքի քաղաքական կլիմայի կտրուկ փոփոխություն դեպի վատը, առաջ մղեցին նրա արևմտյան մասն արևելյանից մեկուսացնելու և Արևմտյան Եվրոպայում ամերիկյան տիրապետություն հաստատելու վերաբերյալ Վաշինգտոնի ծրագրերի իրականացումը։ Իսկ այժմ միջուկային պատերազմի նախապատրաստման էսկալացիայի նոր փուլ է նշում վերջերս պրեզիդենտ Ռեյգանի ընդունած որոշումը՝ միջուկային հարվածի միջոցների այնպիսի տարատեսակի արտադրությունն սկսելու մասին, ինչպիսին նեյտրոնային զենքն է։ Այդ զենքի արտադրությունը, իսկ այնուհետև Եվրոպայում դրա տեղաբաշխումը— մի հեռանկար, որը Արևմուտքի լրջմիտ քաղաքական գործիչները դիտում են իբրև անխուսափելի հաջորդ փուլ Պենտագոնի պլաններում, չի կարող չհանգեցնել այսպես կոչված «միջուկային շեմքի» վտանգավոր իջեցման, պարզ ասած՝ միջուկային պատերազմի ծագման ռիսկի մեծացման։ Յոթ տարվա ընթացքում մշակված, միջմայրցամաքային ստրատեգիական զենքի պաշարների հետագա աճին ու որակական կատարելագործմանը պատնեշ դրած ՍՍՍ—2 պայմանագրի վավերացումից ԱՄՆ-ի հրաժարվելը և Արևմտյան Եվրոպայում միջին հեռավորության նոր հրթիռների ծավալման նախապատրաստության զուգակցությամբ այսպես կոչված մերձավոր մարտի նեյտրոնային զենքի արտադրությունն սկսելը ստեղծում է ամերիկյան զինվորականության կողմից պլանավորվող միջուկային կոնֆլիկտի նախապատրաստությանն ուղղված պրակտիկ գործունեության բավականաչափ համակողմանի պատկերը, մի կոնֆլիկտ, որտեղ, ինչպես վկայում է հենց նախապատրաստությունների բնույթը, Վաշինգտոնն ընդունակ է հանդես գալու նախաձեռնողի դերում։

Համենայնդեպս, ստեղծվում է այնպիսի տպավորություն, որ իմպերիա-

լիզմի ռազմատենչ շրջանները գիտակցաբար բանը տանում են դեպի «սառը
պատերազմի» վատթարագույն ժամանակների վերադարձը, որն այսօրվա
պայմաններում կապված կլիներ է՛լ ավելի մեծ վտանգների ու ռիսկի հետ։
Ժողովուրդներին առաջնապող հենց այդպիսի հեռանկարով է պայմանավոր-
վում միջազգային բանակցությունների հրամայական անհրաժեշտությունը,
որը մատնանշում է Սովետական Միությունը։ Այժմ, շեշտում է մեր երկիրը,
վիճելի պրոբլեմները լուծելու բանական այլ ուղի չկա, որքան էլ դրանք սուր
և բարդ լինեն, քան սթափ լուրջ երկխոսությունը. այս գործում չպետք է բաց
թողնվի եղած և ոչ մի հնարավորություն, քանի որ միջուկային կոնֆլիկտի
ռիսկը մեծանում է բանակցությունների համար կորցրած յուրաքանչյուր օրվա
հետ։ Դրական արդյունքների ձեռքբերման գործում իսկական շահագրգռվա-
ծության և դրանցում իրենց ավանդը ներդնելու կողմերի պատրաստակամու-
թյան հիման վրա լուրջ բանակցությունների անհրաժեշտությունն են մատ-
նանշում նաև ռեալիստորեն խորհող արևմտյան քաղաքական գործիչները։
Այս առումով, եղբայրական սոցիալիստական երկրների կարծիքով, մեծ
նշանակություն կունենար, մասնավորապես, Եվրոպայի անվտանգության ու
համագործակցության Հելսինկիի խորհրդակցության մասնակից 35 պետու-
թյունների ներկայացուցիչների Մադրիդի հանդիպման հաջող ավարտը, որը
կոչված է ծառայելու իրավահավասարության, վստահության և փոխշահավետ
համագործակցության սկզբունքներով սոցիալական տարբեր սիստեմների եր-
կրների միջև հարաբերությունների կարգավորման՝ վեց տարի առաջ Ֆին-
լանդիայի մայրաքաղաքում սկսված պրոցեսի ամրապնդմանն ու զարգացմա-
նը։ Անտարակույս, հանդիպման այդպիսի դրական արդյունք կհանդիսանար
Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման ու զինաթափման՝ ՍՍՀՄ-ի
առաջարկած կոնֆերանսի անցկացման մասին որոշումը։
Բանակցությունների հարցի նկատմամբ սկզբունքորեն այլ վերաբերմունք
է ցույց տալիս ամերիկյան կողմը։ Ոչ թե փոխադարձորեն ընդունելի հիմքի
վրա պայմանավորվածության, այլ իր համար ռազմական հզորության ինչ-որ
գերազանցություն ստեղծելուն են ձգտում Վաշինգտոնի այժմյան կառավարող-
ները՝ դիտավորություն, որի հետևում չի կարելի չտեսնել գլոբալ մաշտաբով
լիդերության, այսինքն, ըստ էության, համաշխարհային տիրապետության
հավակնությունները։ Ճիշտ է, համաշխարհային հասարակական կարծիքի
ճնշման ներքո ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Ռեյգանը ԳՖՀ-ի կանցլեր Հ. Շմիդտի հետ
ունեցած զրույցներում խոստացավ մինչև 1981 թվականի վերջը Սովետական
Միության հետ բանակցություններ սկսել Եվրոպայում միջին հեռավորության
հրթիռների առիթով։ Ընդ որում, սակայն, ոչինչ չի ասվում բանակցություն-
ներն իրավահավասարության հիմունքներով վարելու մտադրության մասին
այն հաշվով, որպեսզի դրանք նպաստեն իրադրության նորմալացմանը, չի
հիշատակվում շուտափույթ պայմանավորվածության հասնելու որևէ ձգտման
մասին, անտեսվում է Սովետական Միության՝ բարի կամքով տոգորված
առաջարկն այն մասին, որ գործի էության շուրջը բանակցություններն սկսելու
պահից և ամերիկյան կողմից համանման քայլի դեպքում ինքը երկրի եվրո-
պական մասում կդադարեցնի միջին հեռավորության իր հրթիռների ծավա-
լումը։
Անշուշտ, բանակցություններին ձեռնամուխ լինելու խոստումն ինքնին դրա-
կան փաստ է։ Սակայն խոսքերին պետք է հաջորդեն գործերը, խոստումներին՝
գործողությունները։ Մանավանդ որ կարևոր հարցերի վերաբերյալ բանակցու-
թյունները, ինչպես ցույց է տալիս միջազգային հարաբերությունների արդի
պրակտիկան, դրանց արևմտյան մասնակիցների մեղքով հաճախ ձգձգվում են
ոչ միայն ամիսներով, այլև երկար տարիներով, ինչպես դա պատահեց, օրի-
նակ, Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների
կրճատման՝ արդեն ութ տարի Վիեննայում շարունակվող բանակցությունների
հետ։ Եվ դա՝ փոխադարձ համաձայնության գալու Սովետական Միության ու
բանակցություններին մասնակցող սոցիալիստական ընկերակցության մյուս
երկրների ցուցաբերած պատրաստակամության դեպքում։
Ինչ վերաբերում է սովետա-ամերիկյան բանակցություններին, ապա



ՍՍՀՄ-ը ամենահեղինակավոր մակարդակով բազմիցս շեշտել է դրանց ան-
հապաղ ձեռնամուխ լինելու իր պատրաստակամությունը։ Միևնույն ժամանակ
Միացյալ Նահանգների նոր վարչակազմը խուսափել է սկսել այնպիսի կարևո-
րագույն թեմաների որևէ քննարկում, ինչպիսիք են սպառազինման պրոցեսի
զսպումը, կամ կոնֆլիկտների օջախների վերացումը և վիճելի միջազգային
պրոբլեմների խաղաղ լուծումը։ Ոչ այլ ոքի, քան պրեզիդենտ Ռեյգանին են
պատկանում հետևյալ խոսքերը. «Կարելի է վիճել, եթե նման վեճ առհասարակ
ծագի, միայն այն մասին, թե ինչպիսի զենք է մեզ պետք և ինչպիսին՝ ոչ,
բայց ոչ բնավ այն մասին, թե արդյոք մենք պետք է հրաժարվենք զենքից
հանուն պայմանագրերի ու համաձայնագրերի»։ Սովետական Միության հան-
դեպ ատելության լայն քարոզի պայմաններում, որ ԱՄՆ-ում մղվում է երկրի
ազդեցիկ քաղաքական վերնախավերի օրհնությամբ ու մասնակցությամբ, ան-
հրաժեշտ է մեծ ջանքեր ներդնել, ընդ որում, ինչպես ցույց է տալիս իրադրու-
թյան զարգացումը, ամենից առաջ և գլխավորապես ամերիկյան կողմից,
այնպիսի մթնոլորտ ստեղծելու համար, որում միջուկային զենքի վերաբերյալ
ՍՍՀՄ—ԱՄՆ բանակցությունները առանց ավելորդ քաշքշուկների կարողանա-
յին հասցնել գործնական արդյունքների։ Տարակույս չկա, որ տվյալ դեպքում
ոչ պակաս կարևոր նշանակություն կունենար նաև բանակցությունները շու-
տափույթ կերպով հաջողությամբ ավարտելու օգտին ինչպես ամերիկյան,
այնպես էլ արտասահմանյան այլ քաղաքական շրջանների ու հասարակական
ուժերի վճռական դիրքը, որոնք ռեալիստորեն են գնահատում այն վտանգ-
ները, որ խաղաղությանը բերում է իրական սոցիալիզմի երկրների նկատ-
մամբ ռազմական գերազանցություն ստեղծելու ԱՄՆ-ի կուրսը։
Չի կարելի չնշել, որ արևմտաեվրոպական երկրներում աճում է ըմբռնումն
այն բանի, թե Վաշինգտոնի կայսերական պատվամոլությունները որքան են
հակասում իրենց կենսական շահերին։ Հակառակ օվկիանոսի մյուս կողմից
գործադրվող բիրտ ու անպատկառ ճնշմանը, այդ պետություններից մի քանիսի
ղեկավար շրջանները բավականաչափ որոշակի արտահայտվում են սպառա-
զինությունների մրցավազքի ինտենսիվացման դեմ, Սովետական Միության,
սոցիալիստական ընկերակցության մյուս պետությունների հետ երկխոսու-
թյունը շարունակելու, դրանց հետ կոնտակտները, այդ թվում և փոխշահավետ
տնտեսական կապերն ակտիվացնելու օգտին, որոնց խզման վրա պնդում է
Վաշինգտոնը։ Այսպես, Հոլանդիայի, Բելգիայի, Դանիայի, մի շարք այլ եր-
կրների ղեկավար շրջանները այս կամ այն աստիճանի եռանդունությամբ
պաշտպանում են արտաքին քաղաքական ինքնուրույն վճիռների իրենց իրա-
վունքները, չեն ցանկանում ենթարկվել սպառազինությունների անզուսպ
մրցավազքին միանալու պահանջներին։
Արևմտյան Եվրոպայի երկրների շատ ականավոր պետական ու քաղա-
քական գործիչներ հանդես են գալիս հրթիռային զենքի վերաբերյալ հարցերի
շուրջ Սովետական Միության հետ շուտափույթ բանակցությունների օգտին,
մայրցամաքում նեյտրոնային մարտագլխիկների տեղաբաշխումը կանխելու
օգտին։ Նման շարժումը լայն թափ է ստացել ԳՖՀ-ում, որտեղ կառավարող
սոցիալ-դեմոկրատական և ազատ-դեմոկրատական կուսակցությունների շատ
անդամներ այդ հարցերում հակադրվում են կուսակցությունների ու կառա-
վարության ղեկավարությանը։ Անգլիայում ամերիկյան պլաններին հակազ-
դելու դիրքերում է կանգնած օպոզիցիոն լեյբորիստական կուսակցությունը։
Արևմտյան Եվրոպայում աճող մասսայականություն են ձեռք բերում ՍՍՀՄ-ի
և մյուս սոցիալիստական պետությունների կողմից պաշտպանվող առաջար-
կությունները՝ Եվրոպայի հյուսիսում ու Բալկաններում միջուկազերծ գոտիներ
ստեղծելու, ինչպես նաև ողջ Միջերկրականում իրադրությունը նորմալացնելու
վերաբերյալ։
ԱՄՆ-ի իմպերիալիզմի ռազմաշունչ շրջանների ու դրանց պեկինյան կա-
մակատարների ջանքերով իրավիճակը բարդացել է Ասիայում, Աֆրիկայում,
Խաղաղ օվկիանոսի, Կենտրոնական Ամերիկայի և Կարիբյան ծովի շրջաննե-
րում։ Մերձավոր ու Միջին Արևելքում, Հնդկական օվկիանոսի և Պարսից ծոցի

տեղաշարժերի, և՛ այն դրականի, որ արևմուտքի հասարակական գիտակցությանն իր հետ բերեց լարվածության թուլացման ինտենսիվ զարգացման ժամանակաշրջանը։ Մեր օրերի հակապատերազմական շարժման առաջադրած պահանջներն այս կամ այն չափով իրականացնելու հնարավորությունների առկայությունը մատնանշող գործոնը դարձյալ Լենինի նշած՝ բուրժուազիայի շատ թե քիչ մշտական բաժանումն է տարբեր խավերի, խմբերի, ֆրակցիաների, որոնցից ոմանք «հակված են հարցի ռազմական լուծման կողմը», իսկ մյուսները՝ «հակված են դեպի պացիֆիզմը» (տե՛ս Երկեր, հ. 33, էջ 308), և դա էապես թուլացնում է իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների դիրքերը։

Խաղաղությունը մարդկության ընդհանուր սեփականությունն է, իսկ մեր ժամանակներում՝ նաև նրա գոյության առաջնագույն պայմանը։ Այն պահպանելն ու հուսալիորեն ապահովելը հնարավոր է միայն բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով։ Տարակույս չկա, որ կաճի բոլոր պետությունների ղեկավարող քաղաքական ոլորտների վրա խաղաղության գաղափարների ներգործությունը, որ պատերազմի փոթորկաբեր ամպերը ժողովուրդների ջանքերով վերջին հաշվով կարող են ցրվել։ Այդ հնարավորությունը իրականություն դարձնելու վճռական պայմանը ինչպես համաշխարհային պատերազմի կանխման կարելիությունը թերագնահատելու, այնպես էլ դրա վտանգը թերագնահատելու դեմ մղվող պայքարն է։ «Մենք ամենքս քաջ գիտենք՝ այսօր պոտենցիալ ագրեսորին դիմակայող խաղաղության ուժերի հզորությունը մեծ է ավելի, քան երբևիցե,— ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում հունիսի 23-ին ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Բայց մենք գիտենք նաև այլ բան. արդիական զենքի բուն բնույթն այնպիսին է դարձել, որ եթե այն գործադրվեր, ապա խաղաքարտի վրա կդրվեր ամբողջ մարդկության ապագան»։

Նվազեցնել լարվածության շիկացածությունը, պահպանել լարվածության թուլացումը, ապահովել նրա հետագա ամրապնդումն ու ծավալումը՝ այսպիսին է արդի միջազգային դրության վճռական հարցը, որի լուծման վրա հաստատակամորեն աշխատում են ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը՝ հենվելով սովետական ժողովրդի միասնական կամքի վրա և սերտորեն համագործակցելով բոլոր խաղաղասեր ուժերի հետ։

«Коммунист» № 14, 1981 г.

ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ՀՐԱԶԴԱՆՅԱՆ ՓՈՐՁԸ

ՅՈՒ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առաջադրեց մի կարևոր խնդիր՝ տասնմեկերորդ հնգամյակը դարձնել կերի հնգամյակ։ Այս գործի հրատապությունն ու կարևորությունը նպատակամղված են անասնապահության հետագա զարգացմանը։ Կուսակցության համագումարի որոշումները գործողությունների մարտական ծրագիր են դարձել հանրապետության գյուղի աշխատավորների համար։

Բարձր լեռնային բարդ պայմաններում Հրազդանի շրջանի կուտակած փորձի մասին, արդյունաբերական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքային դաշինքի, կերարտադրության ու կերի վերամշակման հարցերի կոմպլեքսային ու արդյունավետ լուծման մասին պատմվում է ստորև։

— Չորս կողմը համատարած քարե՛ր են,— սրտացավորեն բացականչեց իմ ուղեկիցը, դիտելով խորդուբորդ դաշտերը։— Եվ մարդիկ ինչպե՞ս են կարողանում այս փոքրիկ հողակտորներից կեր կուտակել։

Ալեքսանդր Վիկտորովիչ Կոբախձեն՝ Վրաստանի կոմկուսի Թելավի շրջկոմի առաջին քարտուղարը, որն այստեղ էր եկել եղբայրական հանրապետության ներկայացուցչական պատվիրակության կազմում՝ կերարտադրության, կերի պատրաստման հարցերին նվիրված սեմինար խորհրդակցությանը, հանկարծ, շուռ գալով իմ կողմը, ասաց. «Ես հրազդանցիների կուրծքը կզարդարեի շքանշաններով»։

Այս խոսակցությունը տեղի էր ունենում առավոտյան, իսկ երեկոյան, երբ մենք մտանք ինֆորմացիայի շրջանային կենտրոնը, որը հագեցված է «Նաիրի—4» ԷՀՄ-երով, և մեր առջև հայտնվեց աշխատանքների ու ընդունված որոշումների կատարման ընթացքի նկատմամբ ամենօրյա վերահսկողության սխեմը, նա արդեն անկեղծորեն նախանձում էր հրազդանցիներին. «Եթե մենք այսպիսի տեխնիկա, այսպիսի հնարավորություններ ունենայի՜նք...»։

Հրազդանի շրջանը, անկասկած, մեծ հնարավորություններ ունի։ Բավական է ասել, որ արդյունաբերական արտադրանքի ծավալն այստեղ 1980 թ. հասել էր 250 միլիոն ռուբլու։ Ընթացիկ հնգամյակի վերջին այս թիվը կկրկնապատկվի։ Չէ՞ որ երկրի զարգացման հիմնական ուղղություններով պլանավորված է գործարկել Հրազդանի մեքենաշինական գործարանի կարողությունները, նույն այս շրջանում էլ կառուցել ավտոբեռնիչների գործարան, ավարտել Իջևան—Հրազդան երկաթուղագծի շինարարությունը։

Սակայն արդյունաբերության բուռն զարգացումը ոչ միայն չկասեցրեց, այլև, ընդհակառակը, մեծապես ընդլայնեց նյութատեխնիկական բազայի ամրապնդման, գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման հնարավորությունները։ Եվ որպես դրա արդյունք, անցած հնգամյակում գյուղատնտեսական արտադրությունը շրջանում աճել է 35 տոկոսով։ Հրազդանցիները մտադրվել են նույնքան էլ ավելացնել ընթացիկ հնգամյակում։

Մինչդեռ ճյուղի շատ ձեռնարկություններում այդ ասպարեզում առկա են որոշակի թերություններ: Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում սև մետաղների ծախսման տվյալները տարիներ շարունակ անփոփոխ են և դրանք զիջում են ոչ միայն միութենական, այլև հարևան համասեռ ձեռնարկության՝ Ձերժինսկու անվան գործարանի ցուցանիշներին: Այստեղ արտադրության տեխնոլոգիան հնացած է, երկար ժամանակ չեն վերանայվում մետաղների ծախսման նորմաները: Չնայած մի փոքր բարելավվել են «Հիդրոհաղորդակ» միավորման ցուցանիշները, բայց դրանք դեռևս ցածր են և մետաղների տնտեսման համար աշխատանքը այստեղ պետք է եռանդուն կերպով շարունակել:

Սև մետաղները խնայողաբար ծախսելու ասպարեզում դեռևս շատ անելիքներ ունեն Չարենցավանի հաստոցաշինական և գործիքաշինական, ինչպես նաև Կիրովականի ճշգրիտ հաստոցաշինական ձեռնարկություններում: Խիստ ցածր է մետաղների օգտագործման գործակիցը Արտաշատի փորձնական-գործիքաշինական գործարանում, որտեղ մետաղի կեսից ավելին վերածվում է գալարատաշեղի և ջարդոնի:

Հանրապետության հաստոցաշինական գործարաններում մետաղների տնտեսման մեծ ռեզերվներ են պարունակում կոնստրուկտորական բնույթի միջոցառումները: Այսպես, մետաղի զգալի խնայողություն կտա մետաղյա իրերի և դետալների փոխարեն պլաստմասսաների լայն կիրառումը, այն դեպքում, երբ տվյալ դետալը չի ենթարկվում դինամիկ կամ բարձր ջերմային ազդեցության: Եվ միանգամայն օրինաչափ է, որ կուսակցության XXVI համագումարում անհրաժեշտ համարվեց զգալիորեն ավելացնել սև և գունավոր մետաղներին փոխարինող նյութերի թողարկումը:

Հանրապետության սարքաշինական ձեռնարկությունների համար հրատապ անհրաժեշտություն է միակերպված դետալների և հանգույցների լայն ներդրումը, սովորական, ոչ կայուն գլանվածքի փոխարինումը կայունացնող ջերմամշակման ենթարկված, ցածր լեգիրացված մետաղով, գլանվածքը՝ մեծ ամրություն ունեցող չուգունով, իսկ ձուլածո կոնստրուկցիաները՝ զոդվածով: Անհրաժեշտ է առավել հետևողականորեն միջոցներ ձեռնարկել դետալների և իրերի քաշը պակասեցնելու նպատակով՝ առանց վնասելու արտադրանքի երկարակեցությանը և աշխատունակությանը:

Մեր սարքաշինական գործարաններում թողարկվող արտադրանքի մետաղատարությունը նվազեցնելու և սև մետաղների օգտագործման գործակիցը բարձրացնելու խոշոր ռեզերվներ կան տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ոլորտում: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է վերանայել արտադրության ամբողջ տեխնոլոգիան՝ այն արդիականացնելու, մետաղների ծախսումների պրոգրեսիվ նորմաներ մշակելու և ներդնելու նպատակով:

Մենք մշտապես պետք է հիշենք կուսակցության XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի հետևյալ խոսքերը. «Մետաղամշակման մեջ կորուստների և մնացուկների թեկուզ կիսով չափ կրճատումը համարժեք կլիներ սև մետաղների պատրաստի գլանվածքի արտադրությունը տասը տոկոսով ավելացնելուն... Իսկ երկրի մասշտաբներով ինչպիսի՜ արդյունք կտային հաստոցների և սարքավորումների քաշի պակասեցումը, մետաղի և մետաղյա իրերի որակի բարձրացումը կամ, ասենք, մետաղի փոխարինիչների արտադրության ընդլայնումը: Այստեղ ծավալվելու լայն ասպարեզ ունեն մեր գիտնականները, կոնստրուկտորները, ռացիոնալիզատորները: Իհարկե, այդ ամենի համար նույնպես անհրաժեշտ են ներդրումներ, ջանքեր, որոշակի ժամանակ: Բայց ավելի քիչ չափերով, քան մետաղի արտադրության անվերջ ավելացման համար»:

Հիրավի՝ գործունեության ծրագիր և ուղեցույց:

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՋԱՐԿԵՐԱԿԸ

**Լ. Ծ. ԹՈՐԳՈՄՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՏՐԱՆՍՊՈՐՏԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ այն կարևոր ճյուղն է, որն էական ազդեցություն է գործում արտադրաուժերի, ողջ էկոնոմիկայի զարգացման վրա: Ուստի դրա կատարելագործումն ու զարգացումը հարկ է իրականացնել մյուս ճյուղերին համամասնաբար, իսկ առանձին դեպքում՝ նույնիսկ առաջանցիկ տեմպերով:

Ժողովրդական տնտեսության տրանսպորտային ապահովումը դարձել է ժամանակի կարևորագույն խնդիրը: Անդրադառնալով այդ հարցին, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում նշեց. «Հաշվի առնելով տրանսպորտում կուտակված պրոբլեմների լրջությունը և մասշտաբները, մենք եկանք այն եզրակացության, որ դրանք հնարավոր է լուծել միայն երկարաժամկետ կոմպլեքսային ծրագրի հիման վրա»:

Տրանսպորտային ցանցի զարգացումը ժողովրդատնտեսական բարդ խնդիր է, որի լուծումը տևական ժամանակ, ֆինանսական և նյութական զգալի միջոցներ է պահանջում: Այդ առումով անհրաժեշտություն է զգացվում հնգամյա պլանները սերտորեն զուգակցել տրանսպորտի զարգացման 15—20 տարվա հեռանկարային պլանների և կանխատեսումների հետ:

Աղքատիկ է եղել անցյալից Սովետական Հայաստանի ստացած տրանսպորտային ժառանգությունը՝ ընդամենը 362 կմ երկաթուղագիծ և մեկուկես հազար կմ սայլի ճանապարհ: Խիստ անբավարար էր երկաթուղու տեխնիկական հագեցվածությունը՝ թեթև ռելսեր, փոքր հզորության շոգեքարշեր, երկսռնի, 16,5 տոննա բեռնատարողության վագոններ, թույլ զարգացած կայարանային ուղիներ: Խճուղային ճանապարհների միայն փոքր մասն էր պետական և նահանգային նշանակության, համեմատաբար ամուր ծածկով, մնացածը տեղական հողածածկ ճանապարհներ էին:

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո հիմնական ուշադրությունը նվիրվեց երկաթուղային տրանսպորտի վերականգնմանն ու վերակառուցմանը: Տնտեսության զարգացմանը զուգընթաց մեծանում էր երկաթուղու դերը, առանձնապես ավելանում էր հարավային երկաթգծի ծանրաբեռնվածությունը, աճում էր նոր ճանապարհների պահանջը:

1929 թ. գործարկվեց երկաթուղու Լենինական—Արթիկ 25 կիլոմետր երկարությամբ հատվածը, որի շնորհիվ այդ շրջանում սկսեց զարգանալ շինանյութերի արդյունաբերությունը: Նախապատերազմյան շրջանի կարևորագույն կառույցներից մեկը Ալյաթ—Մինջևան—Ջուլֆա երկաթուղին էր՝ Ղափանի ճյուղով: Այն ապահովեց Երևանի և Բաքվի ուղիղ կապը և մեծ թափ հաղորդեց Ղափանում լեռնահանքային արդյունաբերության զարգացմանը:

Պատերազմը կասեցրեց տրանսպորտի զարգացումը: Հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա առաջընթացն ապահովելու նպատակով անհրաժեշտ էր հետպատերազմյան տարիներին արագորեն հաղթահարել տրանսպորտի ետ մնալը: Հայտնի է, որ հանրապետության երկաթուղիները հիմնականում անցնում էին հյուսիս-արևմուտքով, պետական սահմանի երկայնքով: Կենտրոնական, հյուսիսային և արևելյան շրջաններում երկաթգծի

բացակայությունը խոչընդոտում էր այդ շրջաններում առկա բնական հարստու-
թյունների յուրացմանը, բացասաբար էր անդրադառնում արդյունաբերության և
գյուղատնտեսության զարգացմանը: Հրամայական պահանջ դարձավ Հայաս-
տանից դեպի Անդրերկաթուղի նոր ելքի ստեղծումը, որով կապահովվեին հան-
րապետության կենտրոնական շրջաններում արագ զարգացող արդյունաբերու-
թյան բեռնափոխադրումները: Ժողովրդատնտեսական այդ կարևոր խնդրի լուծ-
մանը նպաստեց 1947 թվականին Երևան—Հրազդան 60 կիլոմետրանոց եր-
կաթգծի շինարարության վերսկսումը, որի սկիզբը դրվել էր դեռևս 1933 թվա-
կանին: Այդ երկաթգիծը ծառայեց նաև որպես մերձատար ուղի՝ Սևան—Հրազ-
դան հէկերի կասկադի շինարարությանն անհրաժեշտ սարքավորումներ և շի-
նանյութեր փոխադրելու համար: 1957 թ. այդ երկաթուղին շահագործման
հանձնվեց, իսկ 1962 թ. գործարկվեց Հրազդան—Սևան 24 կիլոմետրանոց տե-
ղամասը:

Երևան—Հրազդան—Սևան երկաթուղու կառուցումը հսկայական նշանա-
կություն ունեցավ հանրապետության ժողովրդական տնտեսության համար՝
նպաստելով արդյունաբերական նոր կենտրոնների հիմնմանը (Աբովյան, Չարեն-
ցավան, Հրազդան, Սևան), Արզնիի և Ծաղկաձորի առողջարանների ու հան-
գստավայրերի հետագա զարգացմանը, Սևանի գոտին աշխատավորության
մասսայական հանգստի վայր դարձնելուն:

Տրանսպորտային-տնտեսական կապերի կատարելագործման առումով
կարևոր քայլ է Աղստաֆա—Իջևան՝ 45 կմ երկաթգծի կառուցումը, որն իրակա-
նացվեց 1967—1973 թթ.: Այս ճանապարհը վճռական նշանակություն ունեցավ
Սարիգյուղի բենտոնիտային կավերի խոշոր հանքավայրերի յուրացման հա-
մար: 1971 թ. սկսվեց այդ գծի վերջին տեղամասի՝ Իջևան—Հրազդան 64,4 կմ
հատվածի շինարարությունը. այն առավել բարդ ինժեներաերկրաբանական
պայմաններ ունի: Բավական է հիշատակել, որ այս ուղեգծում փորվում են
16,4 կմ ընդհանուր երկարությամբ չորս թունելներ, որոնցից ամենամեծը Մեղ-
րաձորի թունելն է՝ 8,2 կմ: ՍՄԿԿ XXVI համագումարի ընդունած նոր հնգամ-
յակի հիմնական ուղղություններով նախատեսված է ավարտել Իջևան—Հրազ-
դան երկաթուղու անցկացումը, որով մեր հանրապետությունը կարճ և առավել
հարմար ելք կստանա դեպի Անդրկովկասյան մայրուղի:

Հանրապետության կարևոր կառույցներից է Սևան—Շորժա—Զոդ երկաթ-
գիծը, որի 10 կմ սկզբնահատվածը կառուցվել էր դեռևս 1966-ին: Այնուհետև
այդ գիծը շարունակվեց մինչև Զոդ, և 121 կմ երկաթուղին այժմ ապահովում է
Զոդի հանքավայրից գունավոր մետաղների փոխադրումը Արարատի հարստա-
ցուցիչ ֆաբրիկա: Այդ երկաթգծի գործարկմամբ Սևանի ավազանի որոշ շրջան-
ներ կայուն կապ ստացան հանրապետության կենտրոնական շրջանների հետ:
Այսպիսով, անցած ժամանակամիջոցում հանրապետության երկաթուղային
ցանցը էականորեն մեծացավ և 1979 թ. կազմեց 707 կմ:

Հանրապետության երկաթուղու տեխնիկական վերազինման գործում ան-
գնահատելի դեր խաղաց էլեկտրիֆիկացումը, որն սկսվել էր դեռևս 50-ական
թվականներին: Այժմ էլեկտրիֆիկացված է ցանցի 87,3 տոկոսը, այդ թվում՝
գլխավոր մայրուղիները: Մնացած ճյուղերը փոխադրված են ջերմաքարշային
սպասարկման: Հանրապետության երկաթուղիների էլեկտրիֆիկացման համար
հիմք հանդիսացավ Անդրկովկասյան միասնական էներգասիստեմը: Միաժա-
մանակ իրականացվեց ուղիների վերակառուցում՝ ավտոմատիկայի, սլաքների
և ազդանշանային կենտրոնացված էլեկտրամիջոցների, ինչպես նաև երկաթ-
բետոնե կոճերի կիրառմամբ:

Ճանապարհների ցանցի զարգացումը և տեխնիկական վերազինումը նը-
պաստեցին երկաթուղու բեռնափոխադրումների զգալի աճին: Այսպես, 1950 թ.
համեմատությամբ, 1979 թ. բեռնաշրջանառությունն աճեց 9 անգամ: 1970—
1978 թթ. ժամանակամիջոցում առաքված և ստացված բեռների կառուցվածքի
վերլուծությունը վկայում է, որ առաքվող բեռների աճի տեմպերը կրկնակի գե-
րազանցում են ստացվողին: Դա դրական երևույթ է և նպաստում է ուղարկվող
ու ստացվող բեռների այն անհամամասնության վերացմանը, որը երկար տարի-
ներ նկատվում է հանրապետությունում: Նշված ժամանակահատվածում ներ-



մուծվող զանգվածային բեռներից էականորեն կրճատվել է քարածխի և անտա-
ռանյութի բաժինը: Վառելիքային մազութի օգտագործումը սահմանափակվելու
պայմաններում մեզ մոտ աճում է բենզինի, կերոսինի, դիզելային վառելիքի
սպառումը, որի հետևանքով սպիտակ նավթամթերքների ներմուծումը ավելա-
ցել է 51,4 տոկոսով:

Ուղարկվող և ստացվող բեռների անհամամասնության հետագա հաղթա-
հարման նպատակով անհրաժեշտ է սպիտակ նավթանյութերի երկաթուղային
փոխադրումը փոխարինել խողովակաշարային տրանսպորտով՝ կառուցելով
Աղստաֆա—Իջևան—Դիլիջան—Գագարին—Աբովյան—Երևան 120 կիլոմետրա-
նոց նավթամուղը: ՀՍՍՀ Պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահե-
տազոտական ինստիտուտի հաշվարկներով, խողովակաշարային տրանսպորտի
շահագործումը, երկաթուղային փոխադրումների համեմատությամբ, տարե-
կան կտա 2,5 միլիոն ռուբլու խնայողություն: Սակայն այդ հարցի լուծումը
պայմանավորված է Բաքու—Թբիլիսի—Բաթումի մագիստրալային նավթամու-
ղի կառուցմամբ:

Անհրաժեշտ է նշել, որ վերջին տարիներին երկաթուղային հաղորդակցու-
թյան ներքին ճանապարհներով բեռների փոխադրման ավելացման տեմպերը
զգալիորեն գերազանցում են միջհանրապետական բեռնափոխադրումների
աճին: Այսպես, անցած ութ տարում երկաթուղու բեռնափոխադրումների 25,5
տոկոս ընդհանուր աճի պայմաններում հանրապետության ներքին բեռնափո-
խադրումներն ավելացել են 71 տոկոսով: Դա պայմանավորված է հեռավոր և
թույլ զարգացած շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների կա-
ռուցմամբ, աշխատանքի տերիտորիալ բաժանման հետագա խորացմամբ, ար-
տադրության համակենտրոնացման ուժեղացմամբ, բնական նոր ռեսուրսների
յուրացմամբ, ինչպես նաև ճանապարհատրանսպորտային ցանցի զարգաց-
մամբ:

Հաշվի առնելով երկաթուղային տրանսպորտում վերջին տարիներին առա-
ջացած դժվարությունները, անհրաժեշտ է ուսումնասիրել բեռնափոխադրում-
ները՝ ոչ ռացիոնալ փոխադրումները բացահայտելու և դրանք այլ տրանսպոր-
տով իրականացնելու նպատակով: Բեռնահոսքերի օպտիմալ սխեմաներ մշա-
կելուն զուգընթաց կարևոր նշանակություն ունի արդյունաբերական ձեռնար-
կությունների, կառույցների և մյուս կազմակերպությունների երկաթուղային
մերձատար ուղիների ռացիոնալ օգտագործման խնդիրը: Վերջին տարիներին
հանրապետությունում զգալիորեն ավելացել են այդ ուղիներով իրականացվող
բեռնափոխադրումները: 1975 թ. համեմատությամբ, 1980 թ. ձեռնարկություն-
ների մերձատար ուղիներով բեռնաշրջանառությունն ավելացել է 86 տոկոսով,
իսկ բեռների փոխադրման ծավալը՝ 52 տոկոսով և կազմել է 50,2 միլիոն տոն-
նա: Դա գերազանցում է մագիստրալային երկաթուղիներով իրականացվող
փոխադրումներին:

Ձեռնարկությունների և կազմակերպությունների բեռնափոխադրումների
պահանջները բավարարելու նպատակով անցած հնգամյակում զգալիորեն ընդ-
լայնվել է մերձատար ուղիների ցանցը: Դրանց ընդհանուր երկարությունն այժմ
անցնում է 600 կիլոմետրից, որը հավասար է հանրապետության մագիստրա-
լային երկաթգծերի ընդհանուր երկարության 89 տոկոսին: Դրան զուգընթաց
զգալիորեն նորացվել են լոկոմոտիվային և վագոնային տնտեսությունները,
մեքենայացվել բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեծ մասը: Որոշակի
միջոցառումներ են իրականացված կառավարման կառուցվածքի կատարելա-
գործման համար: Այսպես, Մասիս կայարանում ստեղծված է ՀՍՍՀ պետմատի
միացյալ երկաթուղային տնտեսություն, որն սպասարկում է 20 ձեռնարկու-
թյունների և բազաների, Երևան կայարանում՝ երկաթուղային երեք արտադրա-
մասերի միավորում («Կանազ», «Նաիրիտ», ՋԷԿ): Այնուամենայնիվ, մերձա-
տար ուղիներում վագոնների պարապուրդները խիստ մեծ են և 1,45 անգամ գե-
րազանցում են նորմատիվներին: Այսպիսի վիճակը մերձատար ուղիների գե-
րատեսչական ցրվածության և այն բանի հետևանք է, որ դրանցից շատերը
գտնվում են անբավարար հզորություն, տեխնիկական թույլ հագեցվածություն

ամբողջ ցանցի միայն քառորդ մասը: Մինչդեռ այս շրջանում արտադրվում է արդյունաբերական արտադրանքի երեք հինգերորդ մասը և գյուղատնտեսակա-նի 42 տոկոսը, այստեղ է կենտրոնացված ավտոտրանսպորտի շարժակազմի մեծ մասը: Այդ պատճառով գոտու մայրուղիներում երթևեկությունը մեծ ին-տենսիվություն ունի: Փոխադրումների առավել կենտրոնացում է դիտվում Երե-վանի ճանապարհատրանսպորտային հանգույցի մատույցներում: Ընդ որում մայրաքաղաքն ունի միայն չորս ավտոմայրուղի: Այժմ Աբովյան—Երևան—Էջ-միածին և Աշտարակ—Երևան—Արտաշատ ճանապարհներին շարժակազմի երթևեկության ինտենսիվությունը հասնում է օրական 11,5—20,5 հազար ավ-տոմեքենայի: Հեռանկարում այս տեղամասերում փոխադրումների ինտենսիվու-թյունը կաճի 2—3 անգամ, ուստի մայրաքաղաքի ճանապարհատրանսպորտա-յին հանգույցի հետագա զարգացման համար խիստ կարևոր նշանակություն կունենա Երևանի շրջանց ճանապարհի կառուցումը, որը հնարավորություն կընձեռի առավել հավասարաչափ բաշխելու տրանսպորտային հոսքը քաղաքի մատույցներում և ներքաղաքային մայրուղիները բեռնաթափելու տարանցիկ երթևեկությունից:

Հանրապետության ճանապարհային տնտեսության վիճակը բարելավելու գործում կարևոր նշանակություն ունի ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1979 թ. որոշումը՝ ավտոմոբիլային ճանապարհների հետագա զարգացման միջոցա-ռումների մասին: 1980 թ. համեմատությամբ, նոր հնգամյակի վերջում ամուր ծածկույթով ավտոճանապարհների ցանցը կավելանա 10 տոկոսով, կկառուցվեն և կվերակառուցվեն զգալի երկարությամբ ճանապարհներ: Տասնմեկերորդ հնգամյակում կարևորվում են Երևանի 25 կիլոմետր երկարությամբ շրջանց ճա-նապարհի կառուցումը, Քասախ գետի կամրջային անցումը, Աշտարակ քաղաքի 8,6 կիլոմետրանոց շրջանց ճանապարհը, Աբովյան—Նոր-Հաճըն հատվածի վերակառուցումը:

Փոխադրումների գործը բարելավելու նպատակով նախատեսվում է Սպի-տակ քաղաքի, Վ Թալին և Մարտունի քաղաքատիպ ավանների, Լերմոնտովո գյուղի շրջանց ճանապարհների, Սևանի լեռնանցքի ավտոմոբիլային թունելի կառուցումը և Սեմյոնովկա—Դիլիջան—Ֆիոլետովո 17,2 կիլոմետրանոց ճա-նապարհի վերակառուցումը:

Սևանի և Սյունիքի տնտեսական շրջանների ավտոհաղորդակցության բա-րելավման նպատակով կշարունակվեն Մարտունի—Սելիմի լեռնանցք—Գետափ ճանապարհի կառուցման և Երասխ—Եղեգնաձոր—Գորիս մայրուղու վերակա-ռուցման աշխատանքները:

Հեռանկարում կստեղծվի ավտոմայրուղիների սիստեմ՝ Այգեհովիտ—Սե-վան—Երևան, Երևան—Երասխ—Եղեգնաձոր—Գորիս, Գորիս—Ղափան—Քա-ջարան—Մեղրի: Այդ նպատակով կպահանջվի վերակառուցել Այգեհովիտ—Իջևան—Դիլիջան, Երասխ—Գորիս, Գորիս—Ղափան ճանապարհները, ինչպես նաև պարզել Վարդենիս—Ջերմուկ (60 կմ) ու Մեղրաձոր—Մարգահովիտ (25 կմ) նոր ճանապարհների և Տաշտունի լեռնանցքում 3,3 կմ թունելի կառուցման նպատակահարմարությունը: Դրանցից առաջինը ժողովրդատնտեսականի հետ մեկտեղ կունենա նաև տուրիստական կարևոր նշանակություն, իսկ երկրորդը հնարավորություն կընձեռի բեռնաթափելու Սևանի լեռնանցքի խիստ ծանրա-բեռնված ճանապարհը, կապահովի այդ ուղղությամբ փոխադրումների հուսա-լիությունը:

Մեր հանրապետության տրանսպորտային համակարգում կարևոր տեղ ունի օդային հաղորդակցությունը: Դեռևս պատերազմից առաջ օդանավակայաններ կառուցվեցին Երևանում («Հարավային»), Սիսիանում, Ղափանում, Վարդենի-սում, Ստեփանավանում: Օդային տրանսպորտով ուղևորների փոխադրումները բուռն կերպով զարգացան հետպատերազմյան տարիներին: Նոր օդանավակա-յաններ կառուցվեցին Լենինականում, Կիրովականում և հանրապետության մի շարք այլ քաղաքներում ու շրջկենտրոններում: 1961 թ. Երևանում շահագործ-ման հանձնվեց միութենական նշանակության «Արևմտյան» օդանավակայանը (այժմ՝ «Զվարթնոց»), որտեղից ներկայումս ամեն օր մեկնում է 15—20 հա-



զար ուղևոր: Ամբողջ կոմպլեքսի գործարկումից հետո այս օդանավակայանի կարողությունը կհասնի ժամում 2.500 ուղևորի: Այժմ վերակառուցվում է «Հա-րավային» օդանավակայանը, հետագայում նոր կայաններ կկառուցվեն Կրաս-նոսելսկում, Սիսիանում, Մեղրիում:

Հանրապետության ուղևորաշրջանառության մեջ օդային տրանսպորտի փոխադրումների տեսակարար կշիռը ապագայում կավելանա: Կմեծանա նաև ընդհանուր օգտագործման ավտոբուսների փոխադրումների բաժինը: Բեռնա-շրջանառության կառուցվածքում կաճի ավտոմոբիլային տրանսպորտի տեսա-կարար կշիռը: Սակայն, ինչպես և նախկինում, հանրապետության տրանսպոր-տի հիմնական ձևը մնում է երկաթուղին, որի հաղորդակցության ուղիների կազ-մավորումը հիմնականում կավարտվի տասնմեկերորդ հնգամյակում՝ 1981—1985 թվականներին, թեպետև այդ ցանցի առանձին օղակների շինարարություն կիրականացվի նաև ավելի ուշ ժամկետներում: Կշարունակվի մագիստրալային ավտոճանապարհների կառուցումը, որը կապահովի հուսալի և արագ կապը հանրապետության հիմնական արդյունաբերական ու վարչական կենտրոնների միջև:

Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականնե-րի և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություն-ներում նախատեսվում է միջոցառումներ իրականացնել տրանսպորտի բոլոր տեսակների աշխատանքի բարելավման նպատակով, ապահովել դրանց զար-գացումը՝ ժողովրդական տնտեսության և ազգաբնակչության պահանջմունք-ներին լրիվին համապատասխան:

Այդ խնդրի լուծման համար այժմ հանրապետության պլանային մարմին-ները մշակում են Հայկական ՍՍՀ տրանսպորտի զարգացման երկարաժամկետ կոմպլեքսային ծրագիր, որի նպատակն է կատարելագործել տրանսպորտի բո-լոր տեսակների կազմակերպումը, կառավարումը, պլանավորումը և աշխա-տանքների կոորդինացումը, դրա փոխգործողությունը ժողովրդական տնտեսու-թյան մյուս ճյուղերի հետ, ինչպես նաև տրանսպորտի նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդումը: Այս խնդիրների լուծմամբ էապես կբարելավ-վի ժողովրդական տնտեսության և ազգաբնակչության տրանսպորտային սպա-սարկումը:

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԴԵՄՈԳՐԱՖԻԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Հ. ԱԴՈՆՑ**
Տնտեսական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ արդի փուլում սոցիալական գործոնի, հատկապես աշխատանքային ռեսուրսների դերը մշտապես մեծանում է: Ժողովրդական տնտեսության հետագա հզոր վերելքը, արդյունաբերական խոշոր կենտրոնների գոյավորումը երկրի արևելյան և հյուսիսային շրջաններում, գիտատեխնիկական առաջընթացը պահանջում են միլիոնավոր բարձրորակ կադրեր: Ճիշտ է, արտադրության ընդլայնումն ու ազգային եկամտի աճը հիմնականում կատարվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, բայց շատ դեպքերում արտադրության նոր ճյուղերի ստեղծումը և նոր շրջանների տնտեսական յուրացումը պահանջում են ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատողների թվաքանակի ավելացում:

Մինչև այժմ մեր երկրի որոշ շրջանների գյուղատնտեսության մեջ, ինչպես նաև անձնական օժանդակ և տնային տնտեսություններում առկա էին ոչ մեծաքանակ աշխատանքային ազատ ռեսուրսներ: Այժմ այդ ռեսուրսները գրեթե սպառվել են: Որոշ քանակի աշխատանքային ազատ ռեսուրսներ դեռևս պահպանվել են միջինասիական և անդրկովկասյան հանրապետություններում: Սակայն այդ ռեսուրսների փոխադրումը երկրի այլ շրջաններ կապված են որոշակի դժվարությունների հետ:

Հաշվի առնելով աշխատանքային ռեսուրսների պակասը, կուսակցությունը խնդիր է դրել հատուկ ուշադրություն նվիրել դրանց օգտագործման արդյունավետության բարձրացման, ինչպես նաև դեմոգրաֆիական հարցերին:

Դեմոգրաֆիական պրոցեսներն այս կամ այն չափով առնչվում են երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման գրեթե բոլոր ոլորտների հետ: Ուստի երկրի դեմոգրաֆիական վիճակի ճիշտ գնահատումը ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունի: Այստեղ կարևորագույն պրոբլեմներից մեկը բնակչության աճն է, նրա ընդլայնված վերարտադրությունը:

Վերջին երկու տասնամյակներում մեր երկրի բնակչության աճը աստիճանաբար նվազում է: 1980-ական թթ. սկզբից Սովետական Միության բնակչության վերարտադրությունը յուրահատուկ շրջան է թևակոխելու, և ըստ էության դանդաղելու են բնակչության, հատկապես աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերը:

Նախորդ 20-ամյակի համեմատությամբ 1980—1990 թթ. բնակչության աճի տեմպերը նվազելու են մոտ 40 տոկոսով: Եթե 1970—1979 թվականների ընթացքում երկրի աշխատունակ բնակչությունն աճել է 16,4 տոկոսով, ապա ըստ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի սոցիոլոգիական ինստիտուտի կանխատեսման 1989—1999 թվականներին աշխատանքային ռեսուրսներն աճելու



են միայն 3,7 տոկոսով կամ 5,3 մլն մարդով: Ըստ որում այդ աճը կատարվելու է 40 տարեկանից բարձր տարիքի հաշվին, հետևաբար աշխատունակ բնակչությունը ծերանալու է:

Աշխատանքային ռեսուրսների դանդաղ աճը կապված է 1960-ական թվականներից սկսած դեմոգրաֆիական զարգացման առանձնահատկությունների հետ: Հայրենական պատերազմի ավարտից հետո կատարվեց բնակչության փոխհատուցող աճ, որն ավարտվեց 60-ական թվականների սկզբին և սկսվեց բնական աճի աստիճանական դանդաղում: 1960-ական թվականներից ծննդաբերությունը տարեցտարի նվազեց, իսկ այդ թվականների ծնվածներն աշխատանքային տարիքի մեջ են մտնում 1980-ական թվականների սկզբին: Առաջիկա 20-ամյակում աշխատունակ բնակչության աճը շարունակ դանդաղելու է:

Հայաստանում ևս 1960-ական թվականներին այդ աճը կայունացել է: Հետպատերազմյան ժամանակաշրջանի գրեթե բոլոր տարիներին, միութենական միջինի նկատմամբ, Հայաստանի բնակչության աճի տեմպերը կրկնակի բարձր են եղել: ՍՍՀՄ միջինի համեմատությամբ Հայկական ՍՍՀ աշխատունակ բնակչությունը ևս արագ է աճել: Այդ իսկ պատճառով այժմ Հայկական ՍՍՀ-ում աշխատանքային ռեսուրսների պակաս չկա, ընդհակառակը մեզ մոտ առկա է որոշ քանակի ազատ աշխատուժ: Այդպիսի պայմաններում դեմոգրաֆիական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը Հայաստանում պետք է լինի աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության ապահովումը: Այժմ Հայկական ՍՍՀ-ում աշխատանքային ազատ ռեսուրսները զբաղված են տնային և անձնական օժանդակ տնտեսություններում, ուստի խնդիր է դրված դրանց մի մասը փոխադրել հանրային տնտեսություն՝ տնային և օժանդակ տնտեսություններում թողնելով աշխատանքային ռեսուրսների 8—10 տոկոսը:

ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻ հետ սերտորեն առնչվում են ծննդաբերությունը, մահացությունը քաղաքում, գյուղում և առանձին ռեգիոններում, բնակչության տարիքային, սեռային ու էթնիկական կազմը, ընտանիքի կազմը և նրա դերը բնակչության վերարտադրության գործում, բնակչության զբաղվածությունը:

Բնակչության աճի հիմնական գործոնը ծննդաբերությունն է. Նրա մակարդակի բարձրացումով է պայմանավորված բնակչության արագ աճը և հակառակը: Ծննդաբերության մակարդակը որոշվում է այնպիսի գործոններով, ինչպես բնակչության կյանքի սոցիալ-տնտեսական պայմանները, կուլտուրայի զարգացման աստիճանը, բնակչության էթնիկական կազմը, ամուսնական զույգերի թիվը և այլն:

Հայրենական պատերազմի և նրան հաջորդող տարիներին մեր երկրում ամուսնական տարիքի տղամարդկանց ու կանանց թվի միջև անհամապատասխանություն ծագեց, որը սահմանափակեց նոր ամուսնական զույգերի ստեղծումը և ծննդաբերության աճը:

Տարիքային կազմն ուղղակիորեն ազդում է ծննդաբերության մակարդակի վրա: 1959—1979 թվականների ընթացքում բնակչության ընդհանուր թվաքանակում 20—39 տարիքի բնակչության տեսակարար կշիռը 33,1 տոկոսից իջել է 28,7 տոկոսի, իսկ 40—60 և ավելի բարձր տարիքի բնակչության տեսակարար կշիռը 29,5-ից բարձրացել է 37-ի: Այդ թվերը ցույց են տալիս, որ առավել երիտասարդ տարիքի բնակչության տեսակարար կշիռն իջել է, իսկ ավելի մեծահասակներինը՝ բարձրացել: Ուստի ծննդաբերության մակարդակի իջեցման հետևանքով բնակչությունը ծերացել է: Եթե 1959 թվականին ՍՍՀՄ բնակչության միջին տարիքը 29,6 տարի էր, ապա 1979 թվականին այն հասավ 32,7: Այժմ Հայաստանում բնակչության միջին տարիքը 31 է:

Վերջին 20 տարում ամուսնացած կանանց տեսակարար կշիռը զգալի չափով բարձրացել է: Եթե 1959 թվականին 20—24 տարեկան աղջիկների 50 տոկոսն էր ամուսնացած, ապա 1979 թվականին՝ 60, 25—29 տարեկաններինը՝ համապատասխանաբար՝ 76 և 81 տոկոսը, 30—39 տարեկաններինը՝ 75 և 83, 40—49 տարեկան կանանց՝ 60 և 78-ը:

Ամուսնության մակարդակը միջին ասիական և անդրկովկասյան հանրա-

Դեմոգրաֆիական քաղաքականության իրականացումը սոցիալական ու տնտեսական բարդ խնդիր է, ուստի այդ գործին պետք է մասնակցեն երկրի բոլոր շրջանները, բոլոր կազմակերպություններն ու հաստատությունները՝ սկսած միութենական մարմիններից մինչև հանրապետականն ու շրջանայինը, մինիստրություններն ու ձեռնարկությունները:

Անհրաժեշտ է ճիշտ գնահատել կնոջ սոցիալական հնարավորությունները: Հասարակությունը ինչպիսի օգնություն էլ ցույց տա կնոջը, այնուամենայնիվ, նրա համար դժվար է համատեղել այնպիսի տարբեր դերեր, ինչպիսիք են՝ սերունդ վերարտադրելը, տանն ու ձեռնարկությունում աշխատելը: Այդ դերերն անհրաժեշտ են թե՛ ընտանիքին և թե հասարակությանը: Ուստի հարկ է այնպիսի միջոցառումներ մշակել ու իրականացնել, որպեսզի կնոջ այդ դերերը ճիշտ զուգակցվեն: Հատկապես շատ անելիքներ ունեն ձեռնարկությունները երեխաներ ունեցող կանանց օգնության և մայրության ու մանկության պաշտպանության գործում:

Պրոպագանդայի բոլոր միջոցները պետք է օգտագործվեն կուսակցության դեմոգրաֆիական քաղաքականության կենսագործման համար: Հատուկ ուշադրություն են պահանջում ընտանիքի զարգացման, նրա դերի բարձրացման հարցերը: Հարկ է նկատել, որ ծնողների դերը ընտանիքում նույնքան կարևոր է, որքան նրանց աշխատանքն արտադրության մեջ: Յուրաքանչյուր ծնող, հոգատարություն ցուցաբերելով երեխաների նկատմամբ, զբաղվելով նրանց դաստիարակությամբ, ո՛չ միայն օգնում է իր ընտանիքին, այլև մեծ ծառայություն է մատուցում հայրենիքին, նպաստում նրա հետագա զարգացմանը:

Վերջապես, երիտասարդությանը հարկ է նախապատրաստել ընտանեկան կյանքին, որպեսզի նրանք կարողանան ամուր ընտանիք ստեղծել: Դեռևս դպրոցներում երիտասարդները պետք է հասկանան ընտանեկան կյանքի հոգեբանությունը, ծանոթանան ամուսնական հիգիենայի հիմունքներին, սովորեն ընտանիքի տնտեսությունն ու բյուջեն վարելու գործը: Մոսկվայում, Լենինգրադում և երկրի մի քանի այլ քաղաքներում գործում են ամուսնության ու ընտանիքի ծառայության տներ, որոնք օգնում են երիտասարդ զույգերին սովորելու ընտանիքը վարելու գործը: Կարևոր է ուսումնասիրել նրանց փորձը և այդպիսի տուն կազմակերպել նաև Երևանում: Դեմոգրաֆիական քաղաքականության իրականացման մարզում մեծ դեր ունեն հասարակական կազմակերպությունները, առաջին հերթին՝ արհեստակցական միությունները, կոմերիտմիությունը:

Բնակչության զարգացման նպատակային կոմպլեքսային ծրագիր պետք է կազմվի ոչ միայն Միության մասշտաբով, այլև յուրաքանչյուր հանրապետության ու մեծ քաղաքի համար: Ռեգիոնալ ծրագրերում կարևոր է հաշվի առնել տվյալ հանրապետության, շրջանի ու քաղաքի դեմոգրաֆիական զարգացման յուրահատուկ կողմերը, պատմական ու էթնիկական առանձնահատկությունները: Օրինակ, Սիբիրի և Հեռավոր արևելքի բնակչության զարգացման ծրագրերում պետք է նախատեսվեն միջոցառումներ երկրի տարբեր շրջաններից աշխատունակ բնակչության ներհոսքի, բնակչության սեռատարիքային կազմի բարելավման, մահացության նվազեցման վերաբերյալ:

Հայաստանի բնակչության զարգացման նպատակային կոմպլեքսային ծրագրում նպատակահարմար է միջոցառումներ նախատեսել ծննդաբերության մակարդակի կայունացման, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, բնակչության ներհանրապետական տեղաշարժի կարգավորման, մեծ քաղաքների բնակչության աճի սահմանափակման մասին և այլն:

Ըստ ՀՍՍՀ պետպլանին առընթեր տնտեսագիտության և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի կանխատեսման, Երևանի բնակչությունը 2000 թվականին չպետք է անցնի 1,4 միլիոնից, Լենինականինը՝ 300 հազարից, իսկ Կիրովականինը՝ 230 հազարից: Թվարկված երեք քաղաքների բնակչության աճը կանխատեսված քանակով սահմանափակելու համար պետք է կիրառվեն մի շարք միջոցառումներ: Երևան քաղաքում արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների կառուցումը պետք է արգելել, քաղաքից դուրս հանել որոշ ձեռնարկություններ ու հիմնարկություններ: Լենինականում ու Կիրովականում



ևս պետք է սահմանափակել նոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցումը:

Անհրաժեշտ է հանրապետությունում ընդլայնել դեմոգրաֆիական պրոբլեմներին նվիրված գիտական հետազոտությունները: Այժմ այդ պրոբլեմներով զբաղվում են պետպլանին առընթեր տնտեսագիտության և պլանավորման ինստիտուտը և ԳԱ տնտեսագիտության ինստիտուտը: Պետպլանի տնտեսագիտության և պլանավորման ինստիտուտը հաշվարկում է հանրապետության և նրա շրջանների ու քաղաքների բնակչության աճը քսանամյա հեռանկարի համար, ուսումնասիրում է հայկական ընտանիքի առանձնահատկություններն ու նրա էվոլյուցիան հեռանկարում, կազմում է աշխատանքային ռեսուրսների հաշվեկշիռներ, հետազոտում բնակչության տարաբնակեցման և նրա ներհանրապետական ու միջհանրապետական տեղաշարժի հարցերը: ԳԱ տնտեսագիտության ինստիտուտն ուսումնասիրում է հանրապետության աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերը: Այժմ խիստ կարևորություն ունեն լեռնային շրջանների բնակչության տեղաշարժի և նրա սեռահասակային կազմի բարելավման հետազոտման հարցերը: Հատուկ ուսումնասիրության կարոտ է նաև աշխատունակ բնակչության արտագնացության (այսպես կոչված՝ «խոպան գնացողների») պրոբլեմը:

Սոցիալիստական հասարակարգում գործում է ազգաբնակչության նոր, յուրահատուկ օրենք, որի գլխավոր իմաստն աշխատունակ բնակչության համընդհանուր զբաղվածության ապահովումն է: Սոցիալիստական տնտեսության անշեղ վերելքը և ժողովրդի բարեկեցության բարձրացումը հնարավոր են դարձնում գիտակցորեն կարգավորելու բնակչության վերարտադրությունը և հաջողությամբ կենսագործելու կուսակցության դեմոգրաֆիական քաղաքականությունը:

# ԱՆՁԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

**Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՎԵՐԸՆԹԱՑ զարգացումը խարսխված է հասուն սոցիալիզմի հսկայածավալ արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի վրա։ Վերջինիս նպատակամետ օգտագործումը առավելապես պայմանավորվում է աշխատանքի մարդու նախաձեռնության, եռանդի, ընդունակությունների, գիտելիքների, կրթության, քաղաքական հասունության աստիճանով։ Կուսակցության XXVI համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն առաջադրեց «մեր ամբողջ հասարակության ստեղծագործական պոտենցիալի» մոբիլիզացման անհրաժեշտությունը, սովետական քաղաքական սիստեմի առավելությունների պատշաճ օգտագործումը։

ՍՄԿԿ-ն, որպես կուսակցություն-նորարար, նոր կյանքի կառուցման բոլոր փուլերում հետևողական աշխատանք է կատարել հայտաբերելու ու կիրարկելու սոցիալիստական ռեզերվները։ Սակայն արդի փուլում նորովի է դրսևորվում մարդու ստեղծագործական ունակությունների բացահայտման ու օգտագործման անհրաժեշտությունը։ Այսօր մասսաների ստեղծագործությունը արտադրության ինտենսիվացման կարևոր պայման է, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, գիտատեխնիկական հեղափոխության ծավալման անսպառ ռեզերվ։ Սովետական հասարակության ստեղծագործական կարողության բազմապատկումն ու օգտագործումը համակուսակցական, համապետական գործ է, որը լիովին համահնչուն է անհատի բազմակողմանի զարգացման, պատմության մեջ աշխատավորական մասսաների դերի աճի ՍՄԿԿ ծրագրային նպատակին։

Սովետական մարդկանց կուլտուրայի արագընթաց աճը զարգացած սոցիալիստական հասարակության հասունության կարևորագույն հատկանիշներից է։ Ինչպես ՍՄԿԿ XXVI համագումարում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Այլ է դարձել սովետական մարդը։ Հարստացել են նրա գիտելիքները, բարձրացել է էրուդիցիան, զգալիորեն աճել են հոգևոր պահանջմունքները» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 123)։ Այս առումով առանձնապես կարևորվում է աշխատավորների քաղաքական կուլտուրայի հետագա բարձրացումը, առանց որի անհնարին է զարգացած սոցիալիզմի ընձեռած ռեալ իրավունքների և ազատությունների լիարժեք օգտագործումը։

1920 թվականի վերջերին, երբ ավարտին էր մոտենում քաղաքացիական պատերազմը և երկրի հիմնական խնդիրն էր դառնում խաղաղ ստեղծարար աշխատանքը, քաղլուսվարների համառուսաստանյան խորհրդակցությունում արտասանած ճառում Վ. Ի. Լենինն առաջին անգամ գործածեց «քաղաքական կուլտուրա» արտահայտությունը։ Դրա «...նպատակն է՝ դաստիարակել իսկական կոմունիստներ, որոնք ընդունակ լինեն հաղթելու սուտը, նախապաշարմունքները և օգնելու աշխատավոր մասսաներին, որպեսզի նրանք հաղթեն հին կարգը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 461)։ Իզուր չէ, որ Լենինը քաղաքականություն և կուլտուրա հասկացություններն անբաժանելի և համադաս է համարել։ Քաղաքական կուլտուրան ներառում է գիտական հեղափոխական



տեսության իմացություն, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության հարցերին լավատեղյակություն։ Կռահելով քաղաքական կուլտուրան լոկ քաղաքական գիտելիքների հանգեցնելու վտանգը, Վլադիմիր Իլյիչը նշում էր, որ քաղաքական կուլտուրա հասկացությունը ենթադրում է գիտելիքները վերածել համոզմունքի, իսկ համոզմունքը՝ սոցիալական սուբյեկտների (դասակարգ, խումբ, անհատ) ռեալ քաղաքական գործողությունների։ Մարդու կուլտուրայի մասին, սովորեցնում էր առաջնորդը, դատում են ոչ թե ըստ նրա խոսքերի, այլ՝ ըստ նրա գործերի։ Վճռելով սոցիալիզմի կառուցման գործում կուսակցության և բանվորագյուղացիական պետության կարևորագույն խնդիրները, Վ. Ի. Լենինը առաջնային նշանակություն էր տալիս մասսաների քաղաքական գիտակցականության ձևավորմանը, հատուկ շեշտելով այն հանգամանքը, որ պետք է մարդկանց ըստ ամենայնի համոզել այն բանում, որ ցանկացած պետական գործին անհրաժեշտ է կուլտուրական մոտեցում։ Կուլտուրա հասկացությունը չսահմանափակելով լոկ հոգևոր ոլորտով, առաջնորդը դրա հետ մեկտեղ դնում էր աշխատանքի կուլտուրայի, առևտրի, կառավարման, պետական ամենատարբեր հարցերին մոտեցման, բարոյական ու իրավական, սպառման, կենցաղի կուլտուրայի հարցերը, առանց որոնց, նրա խոր համոզմամբ, անհնար կլինի իրականացնել նախատեսված սոցիալ-կուլտուրական հեղաբեկումը։

Անհատի, նրա գաղափարաքաղաքական, մասնագիտական և բարոյական հատկանիշների կատարելագործումը կոմունիստական շինարարության ազդակներից է։ Ակտիվ, հարուստ ներաշխարհով և ներդաշնակ զարգացած մարդու դաստիարակությունը մեր կուսակցության ծրագրային նպատակն է, սոցիալ-տնտեսական քաղաքականության կիզակետը։ Անհատի կերպավորումը սերտորեն առնչվում է տնտեսական, սոցիալական և քաղաքական պրոբլեմների կոմպլեքսի հետ։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, գաղափարական հասունության բարձր մակարդակի՝ կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց համապատասխան նյութատեխնիկական բազայի։ Հետևաբար, նոր մարդու կերպավորումը ո՛չ միայն նոր հասարակության հաջող կառուցման արդյունքն է, այլև կարևորագույն պայմանը։

Մեր երկրում գոյավորվել է անհատի նոր տիպ։ «Սովետական մարդը,— ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում,— բարեխիղճ աշխատավոր է, քաղաքական բարձր կուլտուրայի տեր անձնավորություն, հայրենասեր ու ինտերնացիոնալիստ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 103)։ Սոցիալիստական քաղաքական կուլտուրայի գոյավորման ու զարգացման գործում առաջնային դերը պատկանում է կոմունիստական կուսակցությանը, որի ազդեցության ներքո իրականացվում է կոմունիստական հասարակության ողջ կուլտուր-դաստիարակչական գործունեությունը։ Քաղաքական կուլտուրան իր գաղափարական բովանդակությամբ, ինչպես և սոցիալական կողմնորոշմամբ դասակարգային է։ Քաղաքական գաղափարախոսության հետ սերտորեն կապված քաղաքական կուլտուրան դարերի պատմություն ունի։ Սակայն մարքս-լենինյան գաղափարների վրա խարսխված քաղաքական կուլտուրան իր առանձնահատկություններով նոր երևույթ է. պատմության մեջ առաջինը սոցիալիզմի օրոք քաղաքական կուլտուրան, ներպետական և միջազգային մաշտաբներով, դարձավ աշխատավոր մարդու, առաջին հերթին բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության, ժողովրդական մտավորականության սեփականությունը, որի նպատակն է կոմունիստական իդեալների կենսագործումը։

Անհատի քաղաքական կուլտուրան նրա վարքագծի, սոցիալական ինքնագիտակցության և ինքնորոշման արդյունք է։ Այն ձևավորվում է անձի շահախնդրությունների և ցանկությունների իրագործմամբ, որոնք պայմանավորվում են հասարակական նպատակների խոր ըմբռնմամբ։ Անհատի քաղաքական կուլտուրան դրսևորվում և վերարտադրվում է նրա աշխատանքային գործունեությունում։ Այն անհրաժեշտ է հասարակության կառավարման, մարդկանց ակտիվության բարձրացման համար։ Դա միաժամանակ սոցիալիստական դեմոկրատիայի առավելությունների օգտագործման, աշխատավորներին

Այդ զգացումի մեջ արտացոլված են ժողովուրդների բարեկամության ամրապնդման և զարգացման, սովետական մարդկանց գաղափարական և սոցիալ-քաղաքական միասնության հասումները։

Քաղաքական կուլտուրայի ձևավորման կարևոր օղակ է աշխատանքային կոլեկտիվը, այնտեղ տիրող սոցիալ-հոգեբանական մթնոլորտը։ Լավ է, երբ կոլեկտիվի ղեկավարը զերծ է ներգերատեսչական մտայնությունից, օժտված է պետական-հասարակական մտածողությամբ։ Նման պայմաններում աշխատանքային կոլեկտիվի անդամների մոտ անկաշկանդ դրսևորվում են կոլեկտիվիստական զգացումներ, ստեղծագործական նախաձեռնություններ։

Կուսակցությունը միշտ էլ հոգացել է կոմունիստներին, սովետական մարդկանց քաղաքական բարձր կուլտուրայով օժտելու մասին։ Այսօր էլ դա կուսակցական, պետական հոգածության առարկան է։ Օրավուր կատարելագործելով գաղափարադաստիարակչական աշխատանքը, կուսակցությունը մասսայական ներազդման բոլոր միջոցներն օգտագործում է անհատի քաղաքական կուլտուրայի ձևավորման, նրա համակողմանի զարգացման համար։ Հարկ է նկատել, որ սխալ է, երբ գաղափարախոսական աշխատանքը դիտվում է որպես լոկ տնտեսական խնդիրների լուծումն ապահովող միջոց, անտեսելով անհատի հոգևոր աշխարհի ոլորտին վերաբերող հարցերը։ Անշուշտ դրանք սերտորեն առնչվում են քաղաքականության բարդ ու փոխկապակցված երևույթների հետ։ Այս գործում առկա անուրանալի հասումների կողքին կան նաև չլուծված պրոբլեմներ։ Դեռևս պատշաճ հիմնավորվածությամբ չեն մշակվել զարգացած սոցիալիզմի պայմաններում քաղաքական կուլտուրայի տեսական հարցերը, սոցիալ-իրավական դրսևորումների շրջանակները։

Այս ամենը նոր պահանջներ է հարուցում գաղափարական-քաղաքական դաստիարակությանը. «Որքան ավելի խոր է այն բարեփոխությունը, որ մենք ուզում ենք իրագործել,— նշել է Վ. Ի. Լենինը,— այնքան ավելի շատ հետաքըրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել դեպի այն, նորանոր միլիոնների և տասնյակ միլիոնների համոզել նրա անհրաժեշտության մեջ» (Երկեր, հ. 31, էջ 630)։

Քաղաքական կուլտուրայի ձևավորմանը մեծ չափով նպաստում է քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մի շարք խնդիրների լուծումը, որոնց վրա կուսակցությունը սևեռել է իր կազմակերպությունների ուշադրությունը։ Այդ թվում՝ պրոպագանդայի և ագիտացիայի բարձր մակարդակի ապահովումը, կյանքի, տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման հետ կապերի ամրապնդումը, ագիտացիայի և պրոպագանդայի հարձակողական բնույթի ապահովումը։

Կուսակցությունը գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կարևորագույն խնդիրն է համարում գործն այնպես կազմակերպելը, որ նոր մարդու քաղաքական-կուլտուրական առաջընթացն ու դաստիարակությունը ձեռք բերեն կոմպլեքսային բնույթ, որ հասարակության բարեկեցության բարելավումը և անձի գիտելիքների աճը զուգակցվեն նրա քաղաքական կուլտուրայի բարձրացման հետ։

---

## Հաշվետու-ընտրական ժողովները կուսկազմակերպություններում

# ՏԵՂԱՇԱՐԺԸ ՉՈՒՇԱՑԱՎ

### ՆԱԽՆԱԿԱՆ ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

Կուսակցության Էջմիածնի շրջկոմում զրույ-
ցը Հովտամեջի կոլտնտեսության սկզբնական
կուսկազմակերպության հաշվետու-ընտրական
ժողովի մասին էր։ Տակավին մի քանի օր կար
մինչև ժողովը և կամենում էի նախապես պատ-
կերացում կազմել տնտեսության վիճակի և
կուսկազմակերպության մեկամյա գործունեու-
թյան վերաբերյալ։
— Մարտունակ կազմակերպություն է,— ա-
սում է կուսշրջկոմի երկրորդ քարտուղար Վ.
Սարգսյանը,— կոմունիստների ուժերը ճիշտ
են տեղաբաշխված արտադրական ճյուղերում,
նույնիսկ ֆերմայում է ապահովված նրանց ո-
րոշակի թիվը։ Կուսբյուրոյի քարտուղար Ռո-
բերտ Սարգսյանն էլ միացյալ ֆերմայի վարիչն
է։ Ամենակարևորն այն է, որ կուսկազմակեր-
պությունը կարողանում է արդյունավետ վերա-
հսկողություն սահմանել արտադրության բոլոր
օղակների նկատմամբ, ամրապնդել կարգապա-
հությունը։ Դրանով պիտի բացատրել, որ բոլոր
ճյուղերը շահութաբեր են և օգուտով կփակեն
տնտեսական տարին։
— Ի՞նչն է ամենաբնորոշը տնտեսության
համար։
Հարցս երկար խորհելու առիթ չի տալիս,
պատասխանը պատրաստ էր, և քարտուղարն
այն ամփոփում է երկու հատիկ բառով՝ ար-
դյունավետությունը և կարգապահությունը։
Իսկ կուսշրջկոմի առաջին քարտուղար Ս.
Մխիթարյանն այսպես է բնութագրում.
— Հովտամեջի կոլտնտեսությունն ամուր է,
կադրերը՝ բանիմաց ու գործունյա։ Նախագահ
Մհեր Հովհաննիսյանը մեր հրահանգիչն էր,
մեկ տարի առաջ երաշխավորեցինք այդ պաշ-
տոնին և չսխալվեցինք։ Ճիշտ էր, պատրաստի
գործի վրա գնաց, բայց երիտասարդ ու ան-
փորձ էր, հնարավոր էր, որ նաև ձախողեր
գործը։ Մինչդեռ կարողացավ գլուխ հանել,
լավ տեմպ վերցրեց, գյուղատնտեսի մասնա-
գիտությունն ու կազմակերպչական ունակու-
թյունը նպաստեցին հաջողությանը։ Եվս մի, ես
կասեի, շատ կարևոր հանգամանք. կուսկազ-
մակերպությունն ու կոլտնտեսության վարչու-
թյունը լավ են համագործակցում, բարոյահոգե-
բանական առողջ մթնոլորտ են ստեղծել տնտե-
սությունում։ Հիմա մենք այնտեղ հոգսեր չու-
նենք։
Եվ, ահա, զինված կուսշրջկոմի քարտուղար-
ների կարծիք-գնահատականներով, մեկնում
եմ Հովտամեջ։ Ուղղաձիգ փողոցները երիզած
նորատունկ ծառաշարքերով ու պարտեզ-այգինե-
րով պարուրված բնակավայր է նախկին Մու-
ղանը՝ հայացքի առջև վեհանիստ Արարատ
լեռը։ Ծառերին թառած գույների խաղը վկա-
յում է, որ աշունը տերուտնօրինություն է ա-
նում նաև այստեղ, և մարդիկ տարված են աշ-
նան հոգսերով։
Առաջին բանը, որ իսկույն աչքի է զարնում
և գրավում այցելուի ուշադրությունը, փողոցի
եզրերին ու կոլտնտեսության գրասենյակի ճա-
կատային մասում փակցված կոչերն են և
պլան-պարտավորությունները ցուցահանող մե-
ծադիր վահանակը։ Ծանոթանում եմ թվերին։
Պարտավորությունները զգալիորեն գերազան-
ցում են պլանայինը։
Գրասենյակում ծանոթանում եմ կոնկրետ ար-
դյունքներին։ Հաշվեմատյաններ թերթելու հարկ
չի զգացվում։ Կոլտնտեսության երիտասարդ
նախագահ Մ. Հովհաննիսյանի ծոցատետրը,
ասես, հանրագիտարան լինի, որ արտացոլում
է տնտեսության ֆինանսատնտեսական գործու-
նեության կոնկրետ արդյունքները։ Ահավասիկ
դրանցից մի քանիսը. խաղողի համախառն ար-
տադրանքը՝ 670 տոննա, նախատեսված 320-ի
փոխարեն, բանջարեղենինը՝ 2127 տոննա,
1800-ի, հացահատիկինը՝ 116 տոննա, 89-ի,
խորդենու՝ 286 տոննա, 220-ի փոխարեն։
Նաև գյուղատնտեսական բոլոր տեսակի մը-
թերքների պետական վաճառքի, մսի ու ձվի
արտադրության, անասունների գլխաքանակի
ավելացման տարեկան առաջադրանքներն են
գերակատարված։ Թիվ-ցուցանիշները գոհա-
ցուցիչ են նաև այն առումով, որ դրանք նկատե-

երևում: Երիտասարդը նկատեց իմ տարակուսանքը և բացատրեց.

— Գործարանի բակում էլեկտրական լուսավորություն ունենք, բայց անջատել ենք: Ամբողջ գիշերը լամպերը վառվում էին, և էլեկտրական էներգիան անխնա վատնելու համար մեզ տուգանեցին: Ու հիմա անջատել ենք...

Ստացվում է այսպես. եթե չենք թողնում ամբողջ գիշերը էներգիան վատնենք, ուրեմն հոսանքը լրիվ կանջատենք: Բայց չէ՛ որ գործարանում գոյություն ունի պահակային ծառայություն և նրա հերթապահի համար ամենևին դժվար չի լինի որոշակի ժամին սեղմել էլեկտրական հոսանքի անջատիչը...

Ու երբ քայլում էի մթին ճեմուղում, մտաբերեցի Հունգարիայի Բալատոնալմադի փոքրիկ քաղաքի երկաթուղային կայարանը: Բարձունքի վրա հպարտորեն կանգնած «Ավրորա» հյուրանոցից կայարանը երևում էր ինչպես ափի մեջ: Ամեն օր, երբ մութն ընկնում էր, ես՛ հետաքրքրությամբ հետևում էի կայարանի տարածքի լուսավորությանը: Երբ գնացքը մոտենում էր կայարանին, միանգամից վառվում էին բոլոր լամպերը: Գնացքն այնտեղ կանգնում էր հինգ րոպե ու հետո, երբ հեռանում էր կայարանից, բոլոր լամպերը մարում էին: Որպեսզի կայարանի հերթապահը չմոռանա միացնել կամ անջատել էլեկտրական հոսանքը, հունգարացիները սրամիտ լուծում են գտել. կայարանի երկու կողմում, երկուական կիլոմետր հեռավորության վրա, երկաթգծի կողքին տեղադրել են ավտոմատ սարք: Երբ գնացքն անցնում է այդ սարքի կողքով, ռելեն միացնում է հոսանքը, կայարանում վառվում են բազմաթիվ լամպերը, և ուղևորները մտնում են լուսավոր կայարան: Իսկ երբ գնացքը հեռանում էր կայարանից, երկու կիլոմետր անցնելուց հետո ռելեն անջատում էր հոսանքը, ու կայարանում միանգամից հանգում էին արդեն ոչ ոքի պետք չեկող լամպերը:

Էլեկտրական էներգիայի խնայողության մի ուրիշ, շատ ուսանելի եղանակի տարիներ առաջ ականատես եմ եղել Բեյրութի հյուրանոցներից մեկում: Երեկոյան կամ գիշերը, երբ մտնում էինք հյուրանոցի շքամուտք, այնտեղ մութն էր լինում: Սակայն մենք արդեն գիտեինք, որ վերելակի կողքին կոճակ կա: Սեղմում էինք կոճակը և շքամուտքը լուսավորվում էր: Մտնում էինք վերելակ ու բարձրանում մեր հարկաբաժինը: Այնտեղ նույնպես լուսավոր էր: Իսկ եթե պատահում էր, որ մինչև դուռը բացելը զրույցի էինք բռնվում, լույսը հանգում էր: Սակայն վհատվելու հարկ չկար, որովհետև այդտեղ նույնպես էլեկտրական հոսանքի կոճակ կար: Սեղմում էինք կոճակը, նորից շքամուտքը ողողվում էր լույսով ու երբ անցնում էր մեկ րոպեն, նորից հանգչում էր լամպը: Չէ՛ որ մեկ րոպեն լիովի բավական էր բանալին գրպանից հանելու և դուռը բացելու համար:

Էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը գործարար մթնոլորտում քննարկեց կուսբյուրոյի հաշվետվությունը: Ելույթ էին ունենում արտադրության հրամանատարն ու բանվորը, գլխավոր ինժեներն ու տեխնիկական վերահսկողության բաժնի վերահսկիչը, կոմերիտական կազմակերպության քարտուղարն ու ժողովրդական վերահսկողության խմբի նախագահը, կուսշրջկոմի ներկայացուցիչն ու ձեռնարկության դիրեկտորը: Եվ ամեն մեկը շոշափում էր կարևոր մի հարց, անդրադառնում կուսբյուրոյի գործունեությանը, խոսում արտադրության կազմակերպման, ներկուսակցական աշխատանքների և ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող այլ հարցերի շուրջ: Արժեր ամեն մի ելույթի անդրադառնալ առանձին, սակայն ես առանձնացրի միայն երկուսը:

Ահա ամբիոնին է մոտենում № 25 արտադրամասի բանվոր Սուրեն Վարդանյանը:

— Ի՞նչն է խանգարում մեր աշխատանքների կազմակերպմանը: Նախ, նյութերը օժանդակ արտադրամասերից միշտ ստացվում են ուշացումով: Մենք շարունակ ասում ենք, որ առնվազն չորս օր շուտ նյութերը պետք է լինեն արտադրամասում, սակայն գրեթե միշտ խախտվում է այդ ժամկետը: Մեր ընդհանուր գործին խանգարող մյուս պատճառը մասերի ցածրորակ լինելն է: Օրինակ, հոսքային գծերում հավաքվող սարքերի մի մասը, օհմերի փոփոխության պատճառով, հարկադրված ենք լինում քանդել: Իսկ դա ուղղակիորեն վնասում է արտադրողականության բարձրացմանը: Դժվար չէ նկատել, թե որքան անտեղի ժամանակ է կորչում թերություն ունեցող սարքերը քանդելու և նորից հավաքելու վրա: Եվ, բնականաբար, բանվորները չեն հասցնում այդ անօգուտ գործի հետ կատարել օրվա առաջադրանքը: Բայց չէ՛ որ պարզապես քամուն է տրվում նաև նրանց աշխատանքը, ովքեր թերություն ունեցող սարքեր են ուղարկում մեզ մոտ:

Ահա և երիտասարդ կոմունիստ, տեխնիկական վերահսկողության բաժնի վերահսկիչ, ՀԼԿԵ Շահումյանի շրջկոմի բյուրոյի անդամ Կարինե Հակոբյանի ելույթը:

— Տեխնիկական վերահսկողության բաժնի աշխատողների հիմնական խնդիրը,— ասաց Կարինեն,— թողարկվող արտադրանքի որակի պետական չափանիշների պահպանմանը հըսկելն է: Ահա թե ինչու մեր բաժնում մշտապես քննարկվում են սարքերի որակին վերաբերող հարցեր: Մենք ունենք որակի խորհուրդ, որի գործունեությունը դրված է ամուր հիմքերի վրա: Այդ խորհրդի նպատակասլաց աշխատանքի շնորհիվ է, որ զգալիորեն նվազել է սարքերի ետդարձի տոկոսը: Չնայած այս ամենին, մենք դեռ չենք կարողացել հաղթահարել նախապատրաստական արտադրամասերի հախուռն վերաբերմունքը ընդհանուր գործի նըկատմամբ: Այդ օղակներում աշխատող կոմունիստներն ու մյուս բանվորները այդպես էլ լրջորեն չեն գիտակցում, որ հատկապես իրենց քարեխիղճ աշխատանքով, իրենց թողարկած արտադրանքի որակով է պայմանավորված հավաքման արտադրամասերում ստեղծվող սարքերի որակը: Մի՞թե պարզ չէ, որ տեխնիկական թերություններ ունեցող մասերով հավաքված սարքը, որքան էլ հավաքող բանվորը հմուտ լինի, չի կարող կատարյալ լինել: Իսկ մենք պետք է թողարկենք միայն անթերի, գերազանց գործող էլեկտրական ճշգրիտ սարքեր:

Կոմունիստներն էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանի կուսկազմակերպության բյուրոյի աշխատանքը հաշվետու ժամանակաշրջանում միաձայն գնահատեցին բավարար ու անցան ընտրություններին: Մի մանրուք գրավեց իմ ուշադրությունը: Երբ թեկնածուներ էին առաջադրում կուսբյուրոյի կազմի համար, մի կոմունիստ տեղից հայտարարեց.

— Իմ կարծիքով, կանանց թիվը բավական շատ եղավ:

— Եվ դա բնական է,— պատասխանեց ժողովի նախագահ, գործարանի դիրեկտոր Ռոբերտ Սարգսյանը,— չէ՛ որ մեր ձեռնարկության աշխատողների 75 տոկոսը կանայք են:

Կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար ընտրվեց գործարանի արտադրության պետի տեղակալ Էդուարդ Մկրտչյանը: Նա Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի սաներից է ու հինգերորդ տարին է, ինչ աշխատում է էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանում: Այդ միջոցում երկու անգամ անընդմեջ ընտրվել է կուսբյուրոյի անդամ, իսկ ահա հիմա, երբ լրացել է կուսակցության շարքերում գտնվելու նրա տասը տարին, առաջին անգամ ընտրվում է խոշոր ձեռնարկության կուսկազմակերպության քարտուղար:

Այսպես ահա իմ ծոցատետրի էջերը լցվեցին Երևանի էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանի կուսկազմակերպության հիանալի մարդկանց անուններով, մի շարք խոսուն թվերով ու բնորոշ փաստերով: Մնում է թուղթ ու գրիչ վերցնել ու արտադրության մեջ աշխատող կոմունիստների, նրանց օգտաշատ գործերի, հատկապես թողարկվող ապրանքների որակի բարձրացման ու խնայողության համար սկըսված մեծ շարժման մասին գրել մի ակնարկ: Հատկապես խնայողության մասին. չէ՛ որ դա մեր ժամանակի պահանջն է:

**Խ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ՏԵՍԱԲԱՆԸ

Վ. Ի. Լենինի զինակիցների մասին գրվել են և դեռ կգրվեն բազում ուսումնասիրություններ, գրքեր: Սույն թեման, հիրավի, անսպառ է: Ստեփան Շահումյանը լենինյան վառ համաստեղության՝ բանվորական շարժման այն տաղանդավոր առաջնորդներից է, որոնք դիմացան ժամանակի փորձությանը, իբրև պրոֆեսիոնալ հեղափոխականներ կյանքի մեծ դպրոց անցան:

«Мысль» հրատարակչությունը հիանալի նվեր մատուցեց սովետական ընթերցողին՝ հրատարակելով նոր գիրք* Ստեփան Շահումյանի մասին: Մեր գրադարանները համալրվեցին մեծ Լենինի հավատարիմ աշակերտին և զինակցին, կուսակցական ու պետական ականավոր գործչին, կոմունիստական կուսակցության խոշոր տեսաբանին նվիրված հետաքրքրական մի աշխատությամբ ևս:

Աշխատությունը գրված է փաստական հարուստ նյութերի հիման վրա: Մի շարք փաստաթղթեր ու նյութեր հրապարակվում են առաջին անգամ: Անհրաժեշտ է նշել, որ մինչ այս գիրքը, Ստ. Շահումյանի վերաբերյալ լույս են տեսել բազմաթիվ ուսումնասիրություններ, մենագրություններ, ինչպես և նրա գրչին պատկանող երկեր, որոնք կարդացվում են մեծ հետաքրքրությամբ:

Այս գրքում հատկապես խորիմաստ են հնչում մեծ Լենինի՝ Շահումյանին ուղղված խոսքերը: «...Մենք հիացած ենք ձեր հաստատուն վճռական քաղաքականությամբ...», ապա՝ «Ես լիովին վստահում եմ Շահումյանին»:

Ուշագրավ և գիտականորեն ճշմարտացի այս աշխատության մեջ ներկայացված են Ստ. Շահումյանի հերոսական կյանքն ու գործունեությունը, հեղափոխական շարժման մեջ նրա առաջին քայլերը, աշխարհայացքի կերպավորման ընթացքը...

Գրքի հեղինակները հմտորեն բացահայտում են գիտական կարևորությունն ու արդիականությունը Շահումյանի աշխատությունների, որոնցում նա պաշտպանել է դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, լայնորեն պրոպագանդել լենինյան ուսմունքը նոր տիպի կուսակցության, դասակարգային պայքարի, ազգերի և ազգային հարաբերությունների մասին, մտքի զարմանալի հստակությամբ ապացուցել մարքսիզմ-լենինիզմի գիտական հետևողականությունն ու համակողմանիությունը, անողոք պայքարել է բուրժուական գաղափարախոսների, ռևիզիոնիզմի և օպորտունիզմի ամեն մի դրսևորման դեմ:




* С. Т. Калтахчян, А. С. Калтахчян. Шаумян (Серия выдающиеся мыслители-марксисты). М., «Мысль», 1981.



Գիրքը բաղկացած է առաջաբանից, յոթ գլուխներից ու վերջաբանից: Վերջում կենսագրական համառոտ ժամանակագրությունն է, անվանացանկը և գրականության բաժինը:

Աշխատության արժանիքներից է այն, որ հեղինակներին հաջողվել է տրամաբանական անխզելի կապ ստեղծել գրքի գլուխների միջև: Առաջին երկու գլուխները նվիրված են երիտասարդ Շահումյանի հեղափոխական հայացքների կերպավորմանը և լուսաբանված է նրա հեղափոխական գործունեությունը XIX դարի վերջին և XX դարի սկզբին:

Ս. Տ. և Ա. Ս. Ղալթախչյանները ցույց են տալիս, թե ինչպես երիտասարդ Ստեփանը, հետևելով լենինյան ուսմունքին, հիմնավորեց ուսանողական շարժումները քաղաքական պայքարի լայն ուղի դուրս բերելու, բանվորական շարժման հետ հեղափոխական ուսանողության սերտ կապի խիստ անհրաժեշտությունը ամբողջ ժողովրդի ազատության համար մղվող պայքարում: Մյուս լենինյանների հետ մեկտեղ Շահումյանն ակտիվ մասնակցել է իսկրայական կազմակերպությունների գործունեությանը, պրոպագանդել ու պաշտպանել պրոլետարիատի հեղափոխական ինքնուրույն կուսակցություն ստեղծելու լենինյան գաղափարը:

Համակողմանի լուսաբանված է Շահումյանի դերը «Հայ սոցիալ-դեմոկրատների միության», նրա անլեգալ օրգան «Պրոլետարիատի» ըստեղծման գործում, Վ. Ի. Լենինի վերաբերմունքը «Միության» նկատմամբ, նրա տված դրական գնահատականը «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» Մանիֆեստին»: Զգալի տեղ է հատկացված այն ժամանակաշրջանին, երբ Շահումյանը գտնվում էր արտասահմանում, որտեղ հանդիպումներ է ունեցել միջազգային բանվորական շարժման խոշոր գործիչների՝ Ա. Բեբելի, Ֆ. Մերինգի, Կ. Կաուցկու և ուրիշների հետ: Շահումյանի հետագա գործունեության համար վճռական նշանակություն ունեցավ ծանոթությունը Վ. Ի. Լենինի և Գ. Վ. Պլեխանովի հետ: Կուսակցության II համագումարից հետո Շահումյանը, որպես ՌՍԴԲԿ Բեռլինի կոմիտեի անդամ, հետևողականորեն պաշտպանեց լենինյան դիրքորոշումը:

Գրքում շեշտված է Շահումյանի կարևոր դերը բուրժուադեմոկրատական հեղափոխության փուլը ժխտող ռեֆորմիստների, անարխիստների, տրոցկիստների օպորտունիստական քաղաքականության դեմ մղվող պայքարում:

Անդրադառնալով աննկուն հեղափոխական-լենինյանի Էվոլյուցիոնիզմն ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ աշխատությանը, հեղինակները ցույց են տալիս, որ Շահումյանը լենինաբար սահմանեց ու բացահայտեց ռևիզիոնիզմի քաղաքական էությունը, որը հակադրում էր հեղափոխությունը էվոլյուցիային, ընդունելով միայն էվոլյուցիոն զարգացում բուրժուական հասարակարգի պայմաններում: Վերլուծելով էվոլյուցիայի և հեղափոխության փոխադարձ կապը՝ Շահումյանը հանգում է գիտականորեն հիմնավորված այն հետևության, որ «Միայն գիտակից վերաբերմունքը դեպի պատմական պրոցեսը, պատմական զարգացման օրենքների ճիշտ գիտական ըմբռնումը, էվոլյուցիոնիզմը ռևոլյուցիոնիզմի հետ համատեղելու ընդունակությունը,— միայն սա է ապահովում մեզ համար խելացի, նպատակահարմար, ճշմարիտ հեղափոխական գործունեություն» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, էջ 131):

Ներկայացնելով Ստ. Շահումյանի վերոհիշյալ և տեսական այլ աշխատությունների բովանդակությունը, ցույց տալով, որ հասարակական երևույթներն ու պրոբլեմները վերլուծելիս Շահումյանը միշտ առաջնորդվել է մարքս-լենինյան գիտությամբ, սույն գրքի հեղինակները համոզիչ կերպով ապացուցում են, որ Շահումյանի դրույթների և հետևությունների մեծ մասը տասնյակ տարիներ անց՝ մեր ժամանակներում ևս պահպանել են իրենց կորովը, գիտական նշանակությունն ու արդիականությունը:

Գրքի հեղինակները բազմակողմանի ու հանգամանորեն լուսաբանել են Ստ. Շահումյանի գործունեությունը առաջին ռուսական բուրժուադեմոկրատական հեղափոխության ժամանակաշրջանում և ռեակցիայի տարիներին: «...Մենք հաստատ համոզված ենք Իլյիչի դիրքավորման ճշմարտացիությանը... Մենք ամբողջովին Իլյիչի կողմն ենք»: 1908 թ. Մ. Ցխակայային գրած նամակներից մեկի այս խոսքերն ամենայն պարզությամբ ու խորությամբ բացահայտում են ականավոր հեղափոխական պրոպագանդիստի, լենինյան դպրոցի փիլիսոփա Շահումյանի աշխարհայացքի բուն էությունը:

Գրքի հեղինակները մանրամասն լուսաբանում են Շահումյանի պայքարը այսպես կոչված «քննական փորձի» փիլիսոփայության՝ էմպիրիոկրիտիցիզմի դեմ, որը ռևիզիայի ենթարկելով մարքսիզմը, այն ձևափոխում էր մախիզմով: Ճիշտ ըմբռնելով էմպիրիոկրիտիցիզմի և դրա տարբերակների՝ էմպիրիոմոնիզմի, էմպիրոսիմվոլիզմի և այլնի բուն էությունը, Շահումյանը հաստատակամորեն պաշտպանեց լենինյան դիրքորոշումը, խորապես գնահատելով նրա սկզբունքայնությունն ու բացառիկ նշանակությունը:

Գրախոսվող գրքի հեղինակները համոզիչ կերպով ցույց են տվել, որ Շահումյանը՝ որպես հետևողական լենինյան, վճռականորեն մերկացրել է մախիստական փիլիսոփայական տեսության սնանկությունը, վերհանել դրա դասակարգային նպատակները:

սանողության I Համառուսական համագումարը տեղի է ունեցել 1902 թ սկզբին, Պետերբուրգում, իսկ 219-րդ էջում, համառոտ կենսագրական ժամանակագրության մեջ, նշված է 1902 թ. փետրվարի 2—8-ը: Մինչդեռ այդ համագումարը, որի «Մանիֆեստը» տպագրվել էր «Իսկրայի» № 18-ում, տեղի է ունեցել ոչ թե Պետերբուրգում, այլ Ռիգայում, և ոչ թե փետրվարին, այլ 1902 թ. հունվարին (տե՛ս Советская историческая энциклопедия, հ. 3, էջ 810):

Էջ 17-ում նշվում է, որ Ծաղումյանի «Հոբելյանական ճառը խոր տպավորություն թողեց նրա ունկնդիրների (ընդգծումը մերն է— Հ. Օ.) և ընթերցողների վրա: Այն հուզել էր նաև իրեն՝ հոբելյարին»: Այն տպավորությունն է ըստեղծվում, թե իբր Ծաղումյանի ճառը լսողները, այսինքն՝ նաև լիբերալ բուրժուական ինտելիգենցիան, հրճվանքով է ընդունել այն: Մինչդեռ այդ ունկնդիրները Ծաղումյանին թույլ չտվեցին նույնիսկ ավարտելու ճառը (որի մասին, ի դեպ, հեղինակները գրել են 16-րդ էջում):

Այդ նույն՝ 17-րդ էջում «Մշակ» թերթի անունը թարգմանվել է որպես «Работник», մինչդեռ պետք է լիներ «Труженик»:

Էջ 8-ում մի քանի, իրոք, գովասանքի արժանի աշխատությունների թվում նշվում են նաև խիստ միջակ, հրապարակախոսական բնույթի բրոշյուրների հեղինակների անուններ, մինչդեռ չի հիշատակված Մ. Արզումանյանի անունը, որը վերջին տարիներս հրատարակել է հանրապետության գիտական հասարակայնության կողմից բարձր գնահատված հիմնարար մենագրություն Ստ. Ծաղումյանի մասին:

Աշխատությունը զերծ չէ վրիպակներից:

Ձնայած այս ամենին, մենք ամենայն համոզմամբ շեշտում ենք աշխատության գիտական արժույթը. հեղինակները կատարել են շնորհակալ գործ՝ ընթերցողներին ներկայացնելով նման ծանրակշիռ և լուրջ գիրք՝ ականավոր մարքսիստ անմահ Ծաղումյանի մասին:

Հ. Ս. ՕԳԱՆԵՍՈՎ

# 1981 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

| | №№ | էջ |
|---|---|---|
| Նոր տարվա շնորհավորանք սովետական ժողովրդին: Լ. Ի. Բրեժնևի ելույթը կենտրոնական հեռուստատեսությամբ և համամիութենական ռադիոյով . | 1 | 3— 4 |
| Ինֆորմացիոն հաղորդագրություն Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարի մասին . . . . . | 3 | 3— 4 |
| Ինֆորմացիոն հաղորդագրություն Սովետակա Միության կոմունիստական կուսակցության կենտկոմի պլենումի մասին . . . . . | 3 | 5 |
| ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում: ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը 1981 թվականի փետրվարի 23-ին . . . . | 3 | 6—74 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը համագումարի փակման ժամանակ . . . | 3 | 75—78 |
| ՍՄԿԿ կենտկոմում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում, ՀԱՄԿԽ-ում և ՀամԼԿԵՄ կենտկոմում. Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին . . . . . | 4 | 9—14 |
| Ինֆորմացիոն հաղորդագրություն Սովետական Միության կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեի պլենումի մասին . . . . | 12 | 3 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը ՍՄԿԿ կենտկոմի պլենումում 1981 թ. նոյեմբերի 16-ին . . . . . . | 12 | 4— 5 |
| ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեում: ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո աշխատավորների նամակների և առաջարկությունների հետ տարվող աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին . | 5 | 4— 6 |
| ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեում . . . . . . | 9 | 3— 5 |
| ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեում . . . . . . | 9 | 6— 9 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության XVI համագումարում . . . . . | 4 | 3— 8 |
| Լ. Բրեժնև— Երևանի մետրոպոլիտենի առաջին գծի կառուցման մասնակիցներին . | 4 | 15 |
| Լ. Բրեժնև— Արփա—Սևան թունելի հորատանցողներին, շինարարներին, մոնտաժողներին, նախագծողներին, կառույցի բոլոր մասնակիցներին . | 4 | 16 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ողջույնը Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեին, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության աշխատավորներին, գիտնականներին և մասնագետներին, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողներին, հանրապետության բոլոր աշխատավորներին | 12 | 16 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը հերոս քաղաք Կիևում հուշահամալիրի հանդիսավոր բացման առթիվ 1981 թ. մայիսի 9-ին . . . . . . | 6 | 3— 7 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը Վրացական ՍՍՀ-ի և Վրաստանի կոմկուսի 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում 1981 թ. մայիսի 22-ին . . | 6 | 8—14 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթը ՍՍՀՄ Գերագույն սովետի տասներորդ գումարման հինգերորդ նստաշրջանում 1981 թ. հունիսի 23-ին . . . | 7 | 3— 4 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը Վիետնամի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Լե Զուանի պատվին տրված ճաշկերույթի ժամանակ 1981 թ. սեպտեմբերի 7-ին . . . . | 10 | 3— 4 |

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

Հանձնված է շարվածքի՝ 11.11.81—25.11.81: Ստորագրված է տպագրության՝ 3.12.81: ՎՖ 11317: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 3,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.832 Պատվեր՝ 2386:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# Ինչ կարդալ

**Краткий биографический очерк — Леонид Ильич Брежнев.** Изд. третье, доп., М., Политиздат, 1981.

*Գրքում կոնկրետ օրինակներով ցույց է տրված, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ողջ կյանքն ու գործունեությունը նվիրված է աշխատավոր մարդկանց շահերին: Կոմունիստների համար, բոլոր մայրցամաքների հարյուր միլիոնավոր մարդկանց համար նրա անունը դարձել է լենինյան սկզբունքայնության, հետևողական ինտերնացիոնալիզմի, խաղաղության ու սոցիալական առաջադիմության անձնվեր պայքարի մարմնացում:*

*Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի բազմակողմանի, անխոնջ ու բեղմնավոր գործունեությունը սոցիալիստական հայրենիքին, լենինյան կուսակցությանը, կոմունիզմի իդեալներին անձնվիրաբար ծառայելու ոգեշունչ օրինակ է:*

Հայաստանի լենինյան կոմերիտմիության պատմություն *(Հեղ. կոլեկտիվ): Նոր՝ բարեփոխված և լրացված հրատարակություն: «Հայաստան» հրատ., 1981:*

*Գրքում արտացոլված է կոմունիստական կուսակցության մարտական ռեզերվի և օգնականի, ՀամԼԿԵՄ-ի ջոկատներից մեկի՝ Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության անցած 60-ամյա փառապանծ ուղին:*

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԲԵԿԶԱԴՅԱՆ— Նամակներ, հոդվածներ, փաստաթղթեր: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Գիրքն ամփոփում է ՍՄԿԿ լենինյան հին գվարդիայի ականավոր գործիչ, ռուսական երեք հեղափոխությունների, Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարի ակտիվ մասնակից Ա. Բեկզադյանի՝ Վ. Ի. Լենինին ուղղված նամակները, ինչպես նաև հոդվածներն ու փաստաթղթերը:*

А. КАЗНАЧЕЕВ — **В. И. Ленин о политическом руководстве массами в борьбе за социализм** (ноябрь 1917 — 1923 гг.) М., Политиздат, 1981.

*Մենագրության հեղինակը ցույց է տալիս Վ. Ի. Լենինի դերը մասսաների նկատմամբ քաղաքական ղեկավարության կարևորագույն սկզբունքների գիտական հիմնավորման ու պրակտիկ կենսագործման մարզում: Գրքում շեշտվում է քաղաքական ղեկավարության մասին լենինյան ուսմունքի հրատապությունը մեր օրերում, երբ կուսակցության պրակտիկ գործունեությունն ուղղված է կոմունիստական հասարակության կառուցման խնդիրների լուծմանը:*

С. ТИТАРЕНКО — **Против фальсификации ленинизма.** Критический очерк. М., Политиздат, 1981.

*Գրքում վերլուծված են ժամանակակից հակակոմունիստների հարձակումները մարքսիզմ-լենինիզմի վրա, մերկացված են նրանց գործադրած մեթոդները: Հեղինակը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ լենինիզմը կենդանի, զարգացող ուսմունք է, որը վճռորոշ ազդեցություն է ունենում հասարակական զարգացման վրա:*

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Կազմակերպված հանցագործություն ԱՄՆ-ում: *Իրադարձություններ, փաստեր, փաստաթղթեր: «Հայաստան» հրատ., 1981:*

*Գրքում ներկայացվում է ԱՄՆ-ում կատարվող հանցագործությունների ընդհանուր պատկերը, բացահայտվում ամերիկյան մաֆիան, որը շաղկապված է բիզնեսի հետ և ներգործում է պետության քաղաքական մթնոլորտի վրա:*

Ռ. ԻՇԽԱՆՅԱՆ— Հայ գիրքը: *1512—1920: Ե., ԳԱ հրատ., 1981:*

*Գրքում օգտագործված են գերազանցապես բանասիրությանը դեռևս անծանոթ նոր նյութեր, փաստեր ու իրողություններ: Ներկայացված է հայ գրքի և տպագրության ավելի քան չորս հարյուր տարիների պատմությունը:*

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԱՅԻՆ ՀԵՐՁԱԳԱՆԱԿՆԵՐ

Վ. Պ. Վոլոգդինի անվան բարձր հաճախականության հոսանքի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում մշակվել է միկրովիրահատական նոր սարք։ Դրա օգնությամբ կարելի է ո՛չ միայն կտրել, այլև հաջողությամբ միացնել կենդանի հյուսվածքները։ Օրինակ, ակնաբուժության մեջ հնարավոր է կատարել եղջերաթաղանթի, սկլերայի (սպիտապատյանի) նրբագույն կտրվածքներ, միացնել ամենամանր արյունատար անոթները։ Նման հերձագանակի տրամագիծն ընդամենը 0,8 միլիմետր է։

Ուլտրաձայնային տատանումների գեներատորը տրանզիստորային է։ Միացնելուց անմիջապես հետո այն ուլտրաձայն է «հաղորդում» գործիքի ծայրին և կարող է գործել տարբեր ռեժիմներում՝ իմպուլսներով ու անընդմեջ։

Վիրահատությունների համար ուլտրաձայնային սարքեր է թողարկում Ուլյանովսկի սարքաշինական գործարանը։

## ՀԵՏԱԶՈՏՄԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴ

Հայտնի է, որ մարդկային մարմնի հյուսվածքներն արձակում են անտեսանելի ճառագայթներ, որոնց ուժը պայմանավորված է օրգանիզմի վիճակով։ Օրինակ, բջիջների վերածնման ժամանակ ճառագայթումը նորմայից ցածր է, բորբոքային պրոցեսների դեպքում՝ բարձր։ Սովետական գիտնականներն ստեղծել են հեմոլյումինամետր, որը նշում է արյան պլազմայի գերթույլ ճառագայթների բացառիկ քվանտները։ Համաշխարհային բժշկական տեխնիկայում եզակի սարքը հնարավորություն է ընձեռում մի շարք հիվանդություններ ախտորոշելու ավելի արագ, քան հետազոտման ավանդական բիոքիմիական մեթոդները։

## ՈՒՐԱՆ ԾՈՎԻՑ

Սիկոկու կղզում (Ճապոնիա) կանգնեցված է ծովաջրից նոր մեթոդով ուրան կորզելու փորձասարք, որը, ինչպես հաղորդում է Կիոդո Ցուսին գործակալությունը, զգալիորեն արդյունավետ է մինչ այդ գործարկվող այլ մեթոդներից, մասնավորապես տիտանի օքսիդի օգնությամբ կորզելու մեթոդից, որը հնարավորություն է ընձեռում մեկ գրամ կլանիչով հավաքել միայն 0,2 միլիգրամ ուրան։ Նոր մեթոդը հենվում է ակրիլային մանրաթելի և ալկալիով մշակված ամիդոքսիմի համակցության օգտագործման վրա։ Տասն օր շարունակ ջրում մնալուց հետո այդ կլանիչի մեկ գրամը կարող է հավաքել չորս միլիգրամ ուրան։

## ԳՐԱԳԵՏ ԳՐԱՄԵՔԵՆԱ

Գիսեն քաղաքի (ԳՖՀ) համալսարանում ստեղծվել է գրամեքենայի վրա մեքենագրած տեքստի ճշտությունը հսկող էլեկտրոնային սիստեմ։

ԷՀՄ-ի հիշողության մեջ մուծված է բժշկական տերմինների բառարան (նախնական փորձերի համար ընտրված է բժշկությունը, քանի որ սխալը բժշկական տեքստում երբեմն կարող է ճակատագրական լինել)։ Մեքենան ստուգում է մեքենագրած ամեն մի խոսք և միայն դրանից հետո կարելի է մեքենագրել թղթի վրա։ Այդ կատարվում է այնքան արագ, որ մեքենագրուհին գրեթե չի նկատում դադարը։ Եթե ԷՀՄ-ը, ստուգելով հերթական բառը, իր հիշողության մեջ չի գտնում դրա նման որևէ բառ, ապա կարող է վերահարցնել մեքենագրուհուն։ Իսկ եթե նա հաստատում է գրվածի ճշտությունը, մեքենան հասկանում է, որ հանդիպել է նոր, իրեն անծանոթ տերմինի և թույլ է տալիս այն մեքենագրել թղթի վրա, միաժամանակ նոր բառը մուծում է իր հիշողության մեջ։